# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7

ՀՈՒԼԻՍ, 1981

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

**Выходит один раз в месяц на армянском языке**

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




ԵՐԵՎԱՆ ★ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ



digitised by A.R.A.R.@

## СОДЕРЖАНИЕ




© Издательство ЦК КП Армении, «Ленинян угиов», 1981.


# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԵԼՈՒՅԹԸ

## ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՏԱՍՆԵՐՈՐԴ ԳՈՒՄԱՐՄԱՆ ՀԻՆԳԵՐՈՐԴ ՆՍՏԱՇՐՋԱՆՈՒՄ 1981 Թ. ՀՈՒՆԻՍԻ 23-ԻՆ

*Հարգելի ընկեր դեպուտատնե՛ր։*

*Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVI համագումարը արձանագրեց. «Այսօր աշխարհի իրադրությունը պահանջում է նոր, լրացուցիչ ջանքեր՝ վերացնելու համար պատերազմի սպառնալիքը, ամրապնդելու միջազգային անվտանգությունը... Պաշտպանել խաղաղությունը. միջազգային տեսակետից այժմ մեր կուսակցության, մեր ժողովրդի, ինչպես նաև մոլորակի բոլոր ժողովուրդների համար չկա ավելի կարևոր խնդիր»։*

*Հաշվի առնելով միջազգային իրավիճակի լրջությունը՝ համագումարը առաջ քաշեց խաղաղության ամրապնդման կոնկրետ ծրագիր, որն այսօր գտնըվում է համաշխարհային հասարակայնության ուշադրության կենտրոնում։ Դրա կենսագործման համար շարունակում են համառորեն աշխատել թե՛ մեր կուսակցությունը, թե՛ սովետական կառավարությունը։*

*ՍՄԿԿ համագումարից հետո անցած երեք ամսում միջազգային իրադարձությունների ընթացքը նոր համոզչությամբ հաստատեց մեր կուսակցության արած հետևությունների ճշմարտացիությունը։*

*Ռազմատենչ միլիտարիստական շրջանները ամերիկյան իմպերիալիզմի գլխավորությամբ ծավալել են սպառազինությունների՝ իրենց մասշտաբներով աննախընթաց մրցավազք։ Նրանք խուսափում են զինված պրոցեսը կասեցնելու, կոնֆլիկտների օջախները վերացնելու և միջազգային վիճելի պրոբլեմները խաղաղ լուծելու շուրջը բանակցելուց։ Նրանք անամոթաբար խրախուսում են իրենց դրածոների կողմից կատարվող բացահայտ ագրեսիան և միջազգային բանդիտիզմի ակտերը։ Աշխարհում տիրող իրադրության շիկացումն ավելի ու ավելի վտանգավոր է դառնում։ Աճում է նաև այդ վտանգի ըմբռնումը լայն մասսաների կողմից, ամրապնդվում են միլիտարիստների ակտիվության դեմ ուղղված բողոքի ձայները։*

*Այս պայմաններում բացառիկ մեծ է բոլոր խաղաղասեր երկրների և ժողովուրդների պատասխանատվությունը. Նրանք պետք է վիժեցնեն արկածախընդրական պլանները, թույլ չտան, որ կատարվի անուղղելին, պահպանեն խաղաղությունը։*

*Մենք՝ սովետական մարդիկ, հատուկ սրությամբ ենք գիտակցում այդ պատասխանատվության չափը։ Մեր ուսերին է գերմանաֆաշիստական ագրեսորների ջախջախման պատերազմի դաժան փորձը, մի պատերազմ, որն սկսվեց ուղիղ քառասուն տարի առաջ՝ Սովետական Միության վրա հիտլերյան Գերմանիայի չարանենգ հարձակումով։ Դա ամենածանր պատերազմն էր այն բոլոր պատերազմներից, որոնք երբևիցե բաժին են ընկել մեր ժողովրդին, և առհասարակ աշխարհի որևէ ժողովրդի։ Ագրեսորի դեմ այդ սրբազան մարտը մենք մղեցինք ոչ թե հանուն փառքի, այլ հանուն կյանքի՝ երկրի վրա։*

*Այդ մարտում ընկած սովետական միլիոնավոր մարդկանց մեր ժողովուրդը երբեք չի մոռանա։ Երբե՛ք։*




digitised by A.R.A.R.@

*Հոտնկայս հարգենք ընկած հերոսների հիշատակը։* (Բոլորը ոտքի են կանգնում: Տիրում է լռության րոպե):

*Մենք ամենքս քաջ գիտենք՝ այսօր պոտենցիալ ագրեսորին դիմակայող խաղաղության ուժերի հզորությունը մեծ է ավելի, քան երբևիցե։*

*Բայց մենք գիտենք նաև այլ բան. արդիական զենքի բուն բնույթը այնպիսին է դարձել, որ եթե այն գործադրվեր, ապա խաղաքարտի վրա կդրվեր ամբողջ մարդկության ապագան։*

*Դրանից մի հետևություն պետք է անել. հարկավոր է այժմ, այսօր ամեն ինչ անել փակելու համար անսահման սպառազինությունների և պատերազմական արկածախնդրությունների սիրահարների ճանապարհը։ Հարկավոր է ամեն ինչ անել՝ ապահովելու մարդկանց ապրելու իրավունքը։ Եվ այդ գործում չեն կարող լինել կողմնակիներ ու անտարբերներ. դա վերաբերում է ամենքին և յուրաքանչյուրին։ Դա վերաբերում է կառավարություններին ու քաղաքական կուսակցություններին, հասարակական կազմակերպություններին և, իհարկե, պառլամենտներին, որոնք ընտրվել են ժողովուրդների կողմից և գործում են նրանց անունից։*

*Ահա թե ինչու Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը ձեր քննարկմանն են ներկայացնում «Աշխարհի պառլամենտներին և ժողովուրդներին» ուղղված ՍՍՀՄ Գերագույն սովետի դիմումի նախագիծը։ Այդ նախագծով կոչ է արվում ակտիվ գործողություններ ձեռնարկել հանուն խաղաղության և միջազգային անվտանգության, հասնել այն բանին, որ պառլամենտների մեծ հեղինակությունն ու հնարավորություններն օգտագործվեն ի բարօրություն խաղաղության և միջազգային համագործակցության։*

***

*Այնուհետև ընկեր Լ. Ի. Բրեժնևը ընթերցեց «Աշխարհի պառլամենտներին և ժողովուրդներին» ՍՍՀՄ Գերագույն սովետի դիմումի նախագիծը։*

---

11689-ша

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԴԻՄՈՒՄԸ

# ԱՇԽԱՐՀԻ ՊԱՌԼԱՄԵՆՏՆԵՐԻՆ ԵՎ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻՆ

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն սովետը, անհանգստացած պատերազմի աճած վտանգից, սպառազինությունների մրցավազքի աննախադեպ թափից, դիմում է աշխարհի պառլամենտներին և ժողովուրդներին:

ՍՍՀՄ Գերագույն սովետը սույն դիմումով հանդես է գալիս, երբ լրացել է մեր հայրենիքի վրա հիտլերյան ֆաշիզմի հարձակման 40 տարին: Սովետական ժողովուրդը գլուխ է խոնարհում պատերազմում ընկած իր քսան միլիոն հայրենակիցների պայծառ հիշատակի առջև: Երկրորդ համաշխարհային պատերազմը անհամար աղետներ ու տառապանքներ բերեց ամբողջ մարդկությանը: Մենք խորապես հարգում ենք բոլոր նրանց հիշատակը, ովքեր իրենց կյանքը տվեցին ագրեսիայի դեմ մղված պայքարում, հանուն աշխարհի խաղաղության:

Պատմությունըահեղ դաս է տվել: Ժողովուրդները վերին աստիճանի թանկ վճարեցին այն բանի համար, որ չհաջողվեց կանխել պատերազմը, ժամանակին վանել կախված վտանգը: Չի կարելի թույլ տալ, որ ողբերգությունը կրկնվի: Հարկավոր է և հնարավոր է անել ամեն ինչ՝ նոր համաշխարհային պատերազմ թույլ չտալու համար:

Մոլորակը առանց այն էլ արդեն գերհագեցած է մասսայական ոչնչացման զենքով: Բայց այդ զենքի կուտակումը շարունակվում է, ստեղծվում է ավելի ու ավելի կատարելագործված ու կործանիչ զենք: Արևմտյան Եվրոպայում հրապարակներ են պատրաստվում հարյուրավոր նոր միջուկային հրթիռների համար: Ուզում են մարդկանց ընտելացնել միջուկային զենքի գործադրման թույլատրելիության հանցավոր մտքին:

Սրվում է քաղաքական լարվածությունը: Նորից ձգտում են ռազմական գերազանցության հասնել, գործի է դրվել սպառնալիքների լեզուն: Բացեիբաց առաջ են քաշվում ուրիշ երկրների ու ժողովուրդների գործերին միջամտելու հավակնություններ: Եվ այդ ամենը քողարկվում է «սովետական ռազմական սպառնալիքի» վերաբերյալ կոպիտ հերյուրանքով:

ՍՍՀՄ Գերագույն սովետը հանդիսավորությամբ հայտարարում է. Սովետական Միությունը ոչ ոքի չի սպառնում, Արևմուտքի կամ Արևելքի ոչ մի պետության հետ առճակատման չի ձգտում: Սովետական Միությունը ռազմական գերազանցության չի ձգտել և չի ձգտում, նա սպառազինությունների մրցավազքի նոր փուլերի նախաձեռնող չի եղել և չի էլ լինի: Չկա սպառազինությունների այնպիսի տեսակ, որ նա չհամաձայներ սահմանափակել, արգելել փոխադարձ հիման վրա, մյուս պետությունների հետ համաձայնության գալով:

Խաղաղության ապահովումը եղել է և մնում է սովետական պետության



digitised by A.R.A.R.@

արտաքին քաղաքականության բարձրագույն նպատակը: Դրան է նպատակամղված 80-ական թվականների խաղաղության ծրագիրը, որն ընդունվեց Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVI համագումարում: Այդ ծրագիրն ընդգրկում է ինչպես հրթիռամիջուկային, այնպես էլ սովորական զենքի կրճատման միջոցառումներ, առաջարկություններ գոյություն ունեցող կոնֆլիկտների ու ճգնաժամային իրադրությունների կարգավորման և նորերի կանխման վերաբերյալ, առգորված է լարվածության թուլացման պրոցեսը խորացնելու և բոլոր մայր ցամաքների երկրների խաղաղ համագործակցությունը զարգացնելու ձգտումով: Այն արտահայտում է Սովետական Միության պատրաստակամությունը՝ բանակցություններ վարելու խաղաղության ու անվտանգության բոլոր հրատապ հարցերի շուրջը, ուշադրությամբ վերաբերվելու մյուս պետությունների ամեն մի կոնստրուկտիվ գաղափարի:

Մեր միջուկային դարում երկխոսությունը, բանակցությունները հավասարապես հարկավոր են բոլորին, ինչպես որ բոլորին էլ հարկավոր են խաղաղությունը, անվտանգությունը, վստահությունը ապագայի նկատմամբ: Այժմ չկան վիճելի պրոբլեմները, որքան էլ դրանք սուր ու բարդ լինեն, լուծելու մի այլ բանական եղանակ, բացի բանակցություններից: Առկա ոչ մի հնարավորություն չպետք է ձեռքից բաց թողնվի: Ժամանակը չի սպասում:

Բանակցությունների համար կորված յուրաքանչյուր օրվա հետ աճում է միջուկային կոնֆլիկտի վտանգը: Հետաձգվում է յուրաքանչյուր ժողովրդի և բոլոր ժողովուրդների առջև ծառացած կենսական պրոբլեմների լուծումը: Ժամանակը չի սպասում:

Մեր օրերին բոլոր նրանք, ովքեր իրենց գործողություններով խրախուսում են սպառազինությունների մրցավազքը, աշխարհում մարդկանց մասսայական ոչնչացման միջոցների հետագա կուտակումը, պահանջում ուժի դիմել պետությունների միջև վիճելի հարցերը լուծելիս, կամ էլ պարզապես աչք փակում այսօր խաղաղությանը դարանամուտ վտանգի հանդեպ, մարդկությանը փաստորեն հրում են դեպի անդունդ:

ՍՍՀՄ Գերագույն սովետը դիմում է բոլոր երկրների օրենսդիր մարմիններին՝ կոչ անելով վճռականորեն արտահայտվել այնպիսի բանակցությունների օգտին, որոնց արդյունքը լիներ հրթիռամիջուկային սպառազինությունների նոր փուլի արգելումը, բանակցություններ, որոնք լինեին ազնիվ, իրավահավասար, առանց որևէ նախապայմանի կամ թելադրանքի փորձերի:

ՍՍՀՄ Գերագույն սովետը հուսով է, որ իր դիմումը քննության կառնվի այն ամբողջ ուշադրությամբ, որին արժանի է արդիականության այդ ամենակարևոր, ամենահրատապ հարցը: Նա համոզված է, որ պառլամենտներն ունեն անհրաժեշտ առանձնաշնորհումներ ու հեղինակություն, որպեսզի բանակցությունների ճանապարհին արդյունավետորեն հասնեն սպառազինությունների մրցավազքի սանձահարման և զինաթափման: Իր կողմից ՍՍՀՄ Գերագույն սովետը այսուհետ ևս իր ավանդը կներդնի այնպիսի մթնոլորտի ստեղծման գործում, որը նպաստեր բանակցությունների շնորհիվ դրական արդյունքների հասնելուն:

Խաղաղությունը մարդկության ընդհանուր հարստությունն է, իսկ մեր ժամանակներում՝ նաև նրա գոյության առաջնագույն պայմանը: Միայն համատեղ ջանքերով խաղաղությունը կարող է և պետք է պահպանվի ու հուսալիորեն ապահովվի:

**ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏ**

*Մոսկվա, Կրեմլ,*
*23 հունիսի 1981 թ.*



# ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԵՎ ՄԱՐՔՍԻԶՄ—ԼԵՆԻՆԻԶՄԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Ց. Ա. ՍՏԵՓԱՆՅԱՆ
ՍՍՀՄ ԳԱ թղթակից-անդամ

*ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման օրինակ է, կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի կոլեկտիվ իմաստնության մարմնացում: Պատմական նոր պայմաններում համագումարը շարունակեց կուսակցության հիմնական ստրատեգիական գիծը՝ կոմունիստական շարժման վերջնական նպատակին հասնելու համար մեր երկրում իրագործել հնարավոր առավելագույնը: Այն նշանակում է սեփական օրինակով ապացուցել մեր մոլորակի վրա կոմունիստական ֆորմացիայի հաստատման պատմական անխուսափելիությունն ու անհաղթահարելիությունը: Այսպես միաժամանակորեն շաղկապված են ողջ մարդկության համար պատմության մեջ առաջին անգամ դեպի կոմունիզմ մայրուղի հարթող լենինյան կուսակցության ազգային և ինտերնացիոնալ խնդիրները:*

*Այս ասպարեզում հասել ենք համաշխարհային պատմական նշանակության հաջողությունների: Մեր երկրում գոյավորվել է զարգացած սոցիալիզմի հասարակություն: Սոցիալիստական համագործակցության երկրներում կառուցվել են սոցիալիզմի հիմքերը, և նրանք ընթանում են համակողմանի զարգացած սոցիալիստական հասարակության կառուցման հունով: Բուռն կերպով ծավալվում են համաշխարհային հեղափոխական շարժման բոլոր հոսանքները: Այս ողջ պատմական նոր իրադրությունը պայմանավորում է մարքս-լենինյան տեսության հետագա ստեղծագործական զարգացումը ՍՄԿԿ XXVI համագումարի փաստաթղթերում և նյութերում: Այստեղ կենտրոնական տեղ է գրավում ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը, որով հանդես եկավ մեր կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը, ինչպես և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ ընկեր Ն. Ա. Տիխոնովի զեկուցումը՝ առաջիկա հինգ և տասը տարիներին ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման հիմնական ուղղությունների մասին: Գիտական կոմունիզմի տեսության և պրակտիկայի կարևորագույն պրոբլեմներն արտացոլվեցին նաև համագումարի շատ պատգամավորների ու եղբայրական կուսակցությունների պատվիրակությունների ղեկավարների ելույթներում:*

*Խոսելով ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մասին, Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Վ. Վ. Շչերբիցկին ՍՄԿԿ XXVI համագումարում ասաց. «Հաշվետու զեկուցումը ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի ակնառու փաստաթուղթ է, գիտական կոմունիզմի տեսության մեջ*



digitised by A.R.A.R.@

այդ օրինաչափության վառ արտահայտությունն է կոմունիզմ կառուցող առաջին երկրի բոլոր դասակարգերի, խավերի և ժողովուրդների սոցիալական ու ինտերնացիոնալ միասնությունը:

Պատմության մեջ առաջին անգամ սովետական հասարակության միասնությունը ստեղծվեց Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի և երկրի ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման, կուլտուրական հեղափոխության իրականացման ու ազգային հարցի լուծման միջոցով անցման շրջանի հակասությունների հաղթահարման հիման վրա: Առանց սոցիալիզմի կառուցման այս արմատական հարցերից թեկուզ մեկի լուծման անհնարին է հասնել նոր հասարակության ամուր կայունության ու միաձույլ միասնության: Լենինիզմի այս ճշմարտությունը մենք տեսնում ենք արդի Լեհաստանի օրինակով: Ժամանակին չլուծելով գյուղատնտեսության կոոպերացման խնդիրը, Լեհաստանն այժմ կանգնեց սոցիալական առումով անկայուն, տնտեսական ծանր դրության առջև: Սա բազմաթիվ առումներով ուսանելի դաս է: Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առաջացման ու զարգացման պատմությունը պահանջում է հաշվի առնել ինչպես դրական օրինակները, այնպես էլ բացասական երևույթները: Դա անհրաժեշտ է, որպեսզի դաս առնվի նոր հասարակության կառուցման լենինյան սկզբունքների հիման վրա կուսակցության և ժողովրդի միասնության համակողմանի ամրապնդման անհրաժեշտության վերաբերյալ: Այս օրինաչափության բարձրագույն արտահայտությունը լենինյան կուսակցության և սովետական ժողովրդի միասնությունն է:

ՍՄԿԿ XXVI համագումարում Լ. Ի. Բրեժնևը շեշտեց, որ կուսակցության ուժը ժողովրդի հետ միասնության մեջ է, ժողովրդի ուժը՝ կուսակցության հետ միասնության, նրա ղեկավարության մեջ: Նոր հասարակության միասնության՝ որպես կազմավորվող կոմունիստական ֆորմացիայի բնորոշ հատկանիշի, անշեղ ամրապնդումը դրսևորվեց եղբայրական կուսակցությունների համագումարներում— Բուլղարիայի կոմկուսի XII, Չեխոսլովակիայի կոմկուսի XVI, ԳՍՄԿ X և ՄԺՀԿ-ի XVIII համագումարներում: «Այդ համագումարները,— ասել է ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Մ. Ա. Սուսլովը,— ցույց տվեցին սոցիալիզմի եղբայրական երկրների մեծ համագործակցության, միջազգային կոմունիստական շարժման միասնությունն ու միությունը»: Իր վերընթաց զարգացմամբ հզոր միջազգային ուժի վերաճած համաշխարհային կոմունիստական շարժումը հարաճուն ազդեցություն է գործում համաշխարհային արդի և ապագա պրոբլեմները դրականորեն լուծելու վրա, և առաջին հերթին այնպիսի կարևորագույն պրոբլեմի, ինչպիսին մեր մոլորակի վրա խաղաղությունը պահպանելու համամարդկային պրոբլեմն է: Կոմունիստական ֆորմացիան համաշխարհային, ինտերնացիոնալ հասարակություն է: Այն գտնվում է իր առաջացման նախնական փուլում և դրա ստեղծումը տեղի է ունենում իր դարն ապրած կապիտալիզմի դեմ մղվող համառ պայքարում: Այդ պայքարի ընթացքում տեղի է ունենում սոցիալիզմի ո՛չ միայն պրոգրեսիվ, հարաճուն ազդեցությունը կապիտալիզմի երկրներում հեղափոխական պրոցեսների վրա, այլև կապիտալիզմի աշխարհի հետադիմական ազդեցությունը սոցիալիստական երկրների վրա՝ սրանց ներքին գործերին միջամտելու, գաղափարախոսական դիվերսիաների, պրովոկացիաների, հոգեբանական պատերազմի միջոցով, նպատակ ունենալով խարխլել սոցիալիստական համագործակցությունը և քայքայել սոցիալիզմի հիմքերը: Փորձը ցույց է տալիս, որ կուսակցական կյանքի լենինյան նորմերից ամեն մի նահանջ և գիտական կոմունիզմի անխախտ սկզբունքների ամեն մի խեղաթյուրում մեծ դժվարություններ են ստեղծում նոր աշխարհի կառուցման ճանապարհին, և կոմունիզմի բոլոր թշնամիներն ամեն կերպ նպաստում են այդ դժվարություններին: Այժմ մենք տեսնում ենք, թե ինչպես մեր թշնամիներն օգտագործում են Լեհաստանում կուսակցական կյանքի լենինյան նորմերի խախտումները: Բայց Լեհաստանը եղել է, կա ու կմնա սոցիալիստական երկիր: Առավել ցայտուն օրինակ է գիտական սոցիալիզմի սկզբունքների խեղաթյուրումը Չինաստանում, որը իմպերիալիստական ուժերին հնարավորություն ընձեռեց իրենց կողմը քաշելու մի այնպիսի խոշոր երկրի, ինչպիսին ՉԺՀ-ն է: ԳՍՄԿ X համագումարում ընկ. Է. Հոնեկերն ասաց.



«Հանուն մարդկության կյանքում ամենահրատապ հարցերի լուծման, հանուն խաղաղության, պրոգրեսի և ժողովուրդների անկախության պայքարում, իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում կարևոր նշանակություն կունենար դրական ներդրումն այնպիսի խոշոր երկրի, ինչպիսին Չինական Ժողովրդական Հանրապետությունն է:

Ցավոք, հարկ է նշել, որ դեռևս գործն այլ կերպ է դասավորված: Արտաքին քաղաքականությունում ԱՄՆ-ի հետ Չինաստանի բլոկ կազմելը ձեռնտու է համաշխարհային իմպերիալիզմի ամենառեակցիոն շրջանների վարած առճակատման քաղաքականությանը: Հատկապես դա վերաբերում է Պեկինի հակասովետիզմին և սոցիալիստական համագործակցության երկրների նկատմամբ նրա թշնամական վերաբերմունքին: Մաոական ժառանգության հաղթահարումը, ժառանգություն, որը նույնիսկ Չինաստանի այժմյան ղեկավարներն են համարում կորստաբեր, մի բարդ և հակասական պրոցես է: Ուստի և պետք է միայն սպասել, թե ինչպիսի արդյունքների կհանգեցնեն այժմ նախատեսվող փոփոխությունները: Ինչ վերաբերում է ԳԴՀ-ին, ապա նա առաջվա պես պատրաստ է կարգավորել իր հարաբերությունները ՉԺՀ-ի հետ՝ իրավահավասարության, սուվերենության և տերիտորիալ ամբողջականության, ինչպես նաև ներքին գործերին չմիջամտելու սկզբունքների հիման վրա: Մենք հավատացած ենք, որ խաղաղության և նորմալ հարաբերությունների քաղաքականությունը համապատասխանում է նաև բուն չին ժողովրդի շահերին»: Այս ամենը համապատասխանում է նրան, ինչ ասված է Չինաստանի վերաբերյալ ՍՄԿԿ XXV և XXVI համագումարներում:

Մարքս-լենինյան դիալեկտիկան աշխարհի ամենաընդհանուր օբյեկտիվ օրենքների բացահայտման հիման վրա ուսուցանում է, որ հնի դեմ նորի պատմական պայքարում վերջին հաշվով լիակատար հաղթանակ է տանում նորը, առաջավորը, քանզի դա է սոցիալական պրոգրեսի միակ ճիշտ մայրուղին: Ամբողջ աշխարհի վրա ՍՍՀՄ-ի և սոցիալիստական համագործակցության մյուս երկրների պրոգրեսիվ ազդեցությունն անշեղորեն աճելու է այն երկու դիալեկտիկորեն փոխկապակցված խնդիրների իրականացմանը զուգընթաց, որոնց մասին Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXVI համագումարի եզրափակման խոսքում շեշտեց. «Մենք մտադիր ենք մեր բոլոր ուժերը կենտրոնացնել միմյանց հետ շաղկապված երկու ուղղություններում: Դրանցից մեկը կոմունիստական շինարարությունն է, մյուսը՝ խաղաղության ամրապնդումը»: Կոմունիստական շինարարության գլխավոր ստրատեգիական խնդիրը տնտեսական պրոբլեմների լուծումն է:

Քաղաքատնտեսությունը, հատկապես դրա նոր բաժինը՝ սոցիալիզմի քաղաքատնտեսությունը, որն ստեղծագործաբար զարգացվեց ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերում, պատասխան է տալիս կոմունիստական շինարարության հիմնական տնտեսական պրոբլեմների լուծման ուղիների վերաբերյալ: Այդ պրոբլեմներից հիմնարար նշանակություն ունեն. կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցումը, գիտատեխնիկական պրոգրեսի տեմպերի արագացումը, ողջ ժողովրդական տնտեսության հետևողական փոխադրումը ինտենսիվ զարգացման ռելսերի վրա. կառուցվածքային հասարակական արտադրության կատարելագործումը. «Ա» խմբի համեմատությամբ «Բ» խմբի զարգացման տեմպերի որոշ մեծացումը, ժողովրդական տնտեսության կառավարման բարելավումը. պարենային ծրագրի ստեղծումը և այլն: Սրանք են ՍՄԿԿ XXVI համագումարի մշակած կուսակցության տնտեսական քաղաքականության գլխավոր կուրսի կարևորագույն օղակները:

Հասուն սոցիալիզմի հասարակության տնտեսական զարգացումը անխզելիորեն կապված է նրա սոցիալական պրոգրեսի հետ: Կուսակցության տնտեսական ու սոցիալական ծրագրի հիմնական կապող օղակը տասնմեկերորդ հնգամյակի հիմնական խնդիրն է, այն է՝ «ապահովել սովետական մարդկանց բարեկեցության հետագա աճը ժողովրդական տնտեսության հաստատուն, վերընթաց զարգացման հիման վրա, գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու, էկոնոմիկան զարգացման ինտենսիվ ուղու վրա փոխադրելու, երկրի արտադրական պոտենցիալն ավելի ռացիոնալ օգտագործելու, ռեսուրսների



digitised by A.R.A.R.@

բոլոր տեսակներն ըստ ամենայնի խնայելու և աշխատանքի որակը բարելավելու հիման վրա» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը... էջ 61—62)։ Սոցիալիստական հասարակարգի հիմնական նպատակից բխող նման խնդիր այլ ձևակերպումով սահմանել են նաև եղբայրական կուսակցությունների համագումարները։ Այս մի անգամ ևս վկայում է, որ ՍՄԿԿ-ի և եղբայրական կուսակցությունների բոլոր որոշումները խարսխված են Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի և Վ. Ի. Լենինի ձևակերպած գիտական կոմունիզմի անխախտ սկզբունքների վրա։ Եվ այդ սկզբունքների մեջ հատուկ նշանակություն ունի կոմունիստական ֆորմացիայի հիմնական նպատակի գաղափարը։ Դեռևս Կոմունիզմի սկզբունքներում Էնգելսը նշել է, որ այդ նպատակն է «Հասարակության բոլոր անդամների պահանջմունքների բավարարումը» (К. Маркс, Ф. Энгельс. Соч., т. 4, стр. 447)։ Այնուհետև շեշտելով այդ միտքը, Կոմունիստական կուսակցության մանիֆեստում նշվում է ապագա հասարակությունում «բոլորի ազատ զարգացման» պայմանների մասին։ Զարգացնելով այս միտքը, Վ. Ի. Լենինը որպես կոմունիստական ֆորմացիայի հիմնական նպատակ ձևակերպել է «հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցությունը և ազատ համակողմանի զարգացումն» ապահովելը (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 6, էջ 293)։

Սոցիալիզմի և կապիտալիզմի արմատական տարբերություններից մեկն այն է, որ ի տարբերություն վերջին հակամարտ ֆորմացիայի, որտեղ ոմանք, այսինքն՝ փոքրամասնությունը, շահագործողներն ապրում են ճոխության մեջ, իսկ աշխատավորների մեծամասնությունը՝ աղքատության մեջ, նոր հասարակարգի պայմաններում բոլորը կարող են և պետք է լավ ապրեն։ Իսկ դրա համար բոլոր աշխատունակ մարդիկ կարող են և պետք է աշխատեն լավ ու գեբազանց։ Մեզանում, Մարքսի խոսքերով ասած, աշխատանքը՝ բնության հետ մեկտեղ, մեր ողջ հարստության հիմքն ու աղբյուրը, ողջ բնակչության, բոլոր մարդկանց բարեկեցության սիստեմատիկ բարձրացման հիմքն է։

Աշխատանքը միշտ էլ եղել է մարդկանց կենսամիջոց։ Պահպանելով իր այդ մշտական հատկանիշը, աշխատանքը միաժամանակ սոցիալիզմից կոմունիզմին անցնելու պայմաններում աստիճանաբար վերածվում է առաջին կենսական պահանջմունքի։ Հաճախ մամուլում կարելի է տեսնել այն պնդումը, որ արդեն այժմ ՍՍՀՄ-ում մարդկանց մեծամասնության համար աշխատանքը կենսամիջոցից վերածվում է առաջին կենսական պահանջմունքի։ Նրման պնդումներում կարելի է բացահայտել միանգամից երկու սխալ։ Նախ, սխալ է աշխատանքը որպես կենսամիջոց հակադրել աշխատանքին՝ որպես պահանջմունքի։

Կոմունիզմին անցնելու պայմաններում, ինչպես գրել է Մարքսը, աշխատանքը կդառնա ո՛չ միայն կենսամիջոց, այլ կվերածվի առաջին կենսական պահանջմունքի։ Երկրորդ, չի կարելի առաջ անցնել և պնդել, որ այժմ իսկ, զարգացած սոցիալիզմի պայմաններում, սովետական մարդկանց մեծամասնության համար աշխատանքն արդեն դարձել է պահանջմունք։ Իրականում առաջավորների հսկայական բազմամիլիոնանոց ջոկատի կողքին, որի համար աշխատանքը ո՛չ միայն գոյության հիմնական աղբյուր է, այլև աստիճանաբար դառնում է առաջին կենսական պահանջմունք, դեռևս կան ոչ քիչ թվով մարդիկ, որոնք աշխատանքին վերաբերվում են սառնությամբ, չեն կատարում նորմաները, չխոսելով այլևս ծույլերի, հարբեցողների և ուղղակի պորտաբույծների մասին։ Կուսակցության XXVI համագումարը պահանջեց հասնել այնպիսի վիճակի, որպեսզի բոլոր մարդիկ գիտակցեն մի պարզ ճշմարտություն. լավ ապրելու համար պետք է լավ աշխատել, որովհետև կարելի է սպառել այն, ինչ արտադրված է։ Սա ոչ միայն տնտեսական, այլև սոցիալ-քաղաքական պրոբլեմ է։

Գիտական կոմունիզմի տեսությունը, որպես միասնական մարքսիստական ուսմունքի սոցիալ-քաղաքական և եզրահանգիչ մասը, առաջիկա տասնամյակի հիմնական խնդիրների մշակման օրինակով ցույց է տալիս իր յուրօրինակ դերը՝ բացահայտում է սոցիալ-քաղաքական առանձնահատկությունները և այդ



դիրքերից կոմպլեքս կերպով լուսաբանում կոմունիստական շինարարության բոլոր խնդիրները։

ՍՄԿԿ XXVI համագումարը ստեղծագործաբար զարգացրեց գիտական կոմունիզմի հիմնարար դրույթները։ Դրանցում հատուկ տեղ է գրավում հասուն սոցիալիզմի կոնցեպցիան։ ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ասված է, որ «XXV համագումարից հետո կուսակցության տեսական զինանոցը համալրվել է մի շարք կարևոր ընդհանրացումներով ու հետևություններով։

Այն բանից, ինչ արված է տեսության բնագավառում, նախ և առաջ հարկ է հիշատակել զարգացած սոցիալիզմի կոնցեպցիայի մշակումը։ Հենվելով այդ կոնցեպցիայի վրա՝ կուսակցությունը ճշգրտել և կոնկրետացրել է մեր ծրագրային նպատակների իրականացման ուղիներն ու ժամկետները, սահմանել տվյալ պատմական ժամանակաշրջանի ստրատեգիան ու տակտիկան» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը..., էջ 129)։

Զարգացած սոցիալիզմի՝ որպես կոմունիստական ֆորմացիայի կազմավորման համեմատաբար երկարատև շրջանի, էությունը ներդաշնակորեն ամբողջական սոցիալական օրգանիզմի ստեղծումն է, օրգանիզմ, որում կոմպլեքս կերպով լուծվում են կյանքի բոլոր մարզերում կոլեկտիվիստական սկզբունքների հաստատման հիման վրա կոմունիզմի կառուցման բոլոր հիմնական տնտեսական, սոցիալական ու հոգևոր պրոբլեմները։

«Զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում,— ՍՄԿԿ XXVI համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը,— ավարտվում է բոլոր հասարակական հարաբերությունների վերակառուցումը նոր կարգին ներհատուկ կոլեկտիվիստական սկզբունքների հիման վրա։ Այդ վերակառուցումն ընդգրկում է թե՛ նյութական, թե՛ հոգևոր ոլորտը, մեր կյանքի ողջ կացութաձևը» (նույն տեղը, էջ 94)։ Այդ կոմպլեքս պրոբլեմի բաղադրիչ մասը հասուն սոցիալիզմի սոցիալ-դասակարգային կառուցվածքի զարգացման օրինաչափություններն են։ Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ հստակորեն բնութագրված է սովետական հասարակության դասակարգային կառուցվածքը, շեշտված է բանվոր դասակարգի առաջատար դերի մեծացումն ու ամրապնդումը, ցույց են տրված կոլտնտեսային գյուղացիության կյանքում խոշոր փոփոխությունները, նշված է մեր մտավորականության թվի արագ աճը։

«Գնահատելով վերջին տասնամյակներում մեր հասարակության զարգացման փորձը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— կարծում եմ, կարելի է ենթադրել, որ հասարակության անդասակարգ կառուցվածքի կազմավորումը գլխավորապես և հիմնականում տեղի կունենա հասուն սոցիալիզմի պատմական շրջանակներում» (տե՛ս նույն տեղը, էջ 87)։ Այս հետևությունը համահունչ է անդասակարգ սոցիալիստական հասարակարգ կառուցելու վերաբերյալ կուսակցության XVIII համագումարի եզրահանգմանը։ Միաժամանակ ՍՄԿԿ XXVI համագումարը նշեց, որ միայն զարգացած սոցիալիզմի կառուցումով է սկսվում աստիճանական անցումը կոմունիզմին։

Անդասակարգ սոցիալիստական հասարակության ստեղծումը խոշոր առաջընթաց քայլ է լիակատար սոցիալական հավասարության հասնելու ճանապարհին։ Այս առնչությամբ համագումարը քննարկեց գիտական կոմունիզմի նոր տեսական ու գործնական պրոբլեմը՝ «այսպես ասած, տերիտորիալ իմաստով սոցիալական տարբերությունների համահարթման անհրաժեշտությունը» (նույն տեղը, էջ 88)։

Սոցիալ-դասակարգային կառուցվածքի զարգացման հետ սերտ կապի մեջ են ազգային հարաբերությունները։ Ահա թե ինչու դրանք քննարկված են հաշվետու զեկուցման միևնույն բաժնում։ Եթե դասակարգային տարբերությունները կանհետանան հասուն սոցիալիզմի շրջանակներում, ապա ազգային հարաբերությունները կզարգանան հետագայում ևս, պահանջելով ծագող պրոբլեմների ժամանակին լուծում։ Ծրագրային նշանակություն ունի ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման հետևյալ դրույթը. «Մենք դեմ ենք այն միտումներին, որոնք նպատակ ունեն արհեստականորեն վերացնել ազգային առանձնահատկությունները։ Բայց մենք նույնքան էլ անթույլատրելի ենք համարում դրանց արհեստական ուռճացումը» (էջ 93)։ Մեր գաղափարախոսական հակա-



digitised by A.R.A.R.@

գործման և նոր հասարակարգի պատմական առավելությունների համակողմանի բացահայտման համար համագումարն անհրաժեշտ համարեց մշակել հատուկ պարենային ծրագիր, արմատական միջոցառումներ կիրառել դրա շուտափույթ իրականացման համար: Պարենային ծրագրի իրականացումն ունի հսկայական ներքին և միջազգային նշանակություն: Մարդկանց պահանջմունքների առավել լիովին բավարարման ընթացքում կաճի կոմունիզմ կառուցողների ստեղծագործական ակտիվությունը, առավել հաջողությամբ կլուծվի անհատի համակողմանի զարգացման խնդիրը: Այս ամենը կուժեղացնի ռեալ սոցիալիզմի օրինակի հեղափոխականացնող ազդեցությունը ողջ աշխարհի վրա հատկապես այժմ, երբ կապիտալի երկրներում խորանում է տնտեսական ու սոցիալական հակամարտությունը, աճում են գործազրկությունը, ինֆլյացիան և ժողովրդական լայն զանգվածների աղքատացումը: Այս առթիվ տեղին է հիշեցնել Լենինի խոսքերն այն մասին, որ սոցիալիզմի զարգացմանը զուգընթաց ողջ համաշխարհային հեղափոխական պրոցեսի վրա գլխավոր ազդեցությունը մենք կգործենք մեր տնտեսական օրինակով:

Երրորդ, անցյալ կուսակցական համաժողովների համեմատությամբ ՍՄԿԿ XXVI համագումարում մասնակցում էին սովետական կոմունիստների 17 միլիոնանոց բանակի ավելի շատ պատգամավորներ և 109 երկրների 123 կոմունիստական, բանվորական, ազգային-դեմոկրատական և այլ կուսակցությունների ու կազմակերպությունների ավելի շատ պատվիրակներ: Այս ամենը զգալիորեն հարստացրեց համագումարի տեսական ու քաղաքական բովանդակությունը:

Չորրորդ, համագումարին հատուկ էր ձեռք բերած հաջողությունների սթափ գնահատումն ու դեռևս չլուծված խնդիրների նկատմամբ քննադատական-ստեղծագործական մոտեցումը, որն ամբողջությամբ հնարավորություն է ընձեռում ճիշտ լուծելու կոմունիստական շինարարության առաջիկա խնդիրները: Սրանում է նոր հասարակարգի ստեղծման համաժողովրդական, ինչպես ինտերնացիոնալ խնդիրների նկատմամբ լենինյան վերաբերմունքի էությունը:

Հինգերորդ, համագումարն ընթացավ լենինյան լավատեսության, կոմունիստական ապագայի հանդեպ լիակատար վստահության ոգով: Այս դիրքերից համագումարը որոշեց անհրաժեշտ փոփոխություններ և լրացումներ կատարել կուսակցության գործող ծրագրի՝ կոմունիզմի կառուցման ծրագրի մեջ:

ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների լույսի ներքո անհրաժեշտ է նոր, առավել բարձր մակարդակի հասցնել գիտական կոմունիզմի վսեմ ու անհաղթ գաղափարների տեսական մշակումը, դասավանդումն ու պրոպագանդան:

Մեր հասարակագետներն իրենց գիտական, մանկավարժական և պրոպագանդիստական գործունեությունում պետք է ավելի խոր բացահայտեն ու ցույց տան մարքսիզմ-լենինիզմի՝ դեպի կոմունիզմի լիակատար հաղթանակ տանող հասարակական զարգացման օրենքների մասին միակ ճշմարիտ ուսմունքի, ամենահաղթ ուժը: Կոմունիզմի իդեալներին հավատարմությունը պահանջում է ո՛չ միայն կոմունիստական ֆորմացիայի կազմավորման օրենքների խոր իմացություն, այլև մեր գործի արդարացի լինելու անխախտ համոզվածություն, տեսությունը պրակտիկայի հետ, խոսքը գործի հետ սերտորեն ու անքակտելիորեն կապելու կարողություն, համադրելով քննադատությունն ու ինքնաքննադատությունը ստեղծարար գործունեության հետ, ամենօրյա աշխատանքը դեպի կոմունիզմ առաջընթացի ընդհանուր հեռանկարի հետ, գործնականում ցույց տալով ամեն մի դժվարություն հաղթահարելու ունակություն, փաստարկումներով, նոր փաստերի ընդհանրացման հիման վրա բոլոր թշնամիների դեմ մղած պայքարում պաշտպանել մեր նպատակի իրավացիությունը, կոմունիստական բարոյականության և սովետական ապրելակերպի նորմերից բոլոր և ամեն կարգի խոտորումների դեմ անհաշտ և անզիջում պայքար մղել: Այսպես է մեր կուսակցությունը յուրաքանչյուր սովետական մարդու մեջ դաստիարակում կոմունիստական համոզվածությունը ակտիվ կենսադիրքորոշման հետ համատեղելու հմտություն:

---

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ՊԼԱՆԱՎՈՐՈՒՄԸ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼՈՒ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

**Ա. Դ. ԳՈՄՑՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ինտենսիվացման կուրսը պահանջում է ավելի արագ տեմպերով և արդյունավետ օգտագործել գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները: ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում խնդիր է դրվում ապահովել հասարակության տնտեսական հետագա առաջընթացը, հասարակական արտադրության ինտենսիվացումը, դրա արդյունավետության բարձրացումը:

Հասուն սոցիալիզմի պայմաններում լուրջ խնդիրներ են ծառացած արտադրամիջոցներ արտադրող ճյուղերի և ամենից առաջ մեքենաշինության առջև: Ինչպես նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, «Գիտատեխնիկական առաջընթացի հիմքերի հիմքը գիտության զարգացումն է: Բայց նորի առջև դռները լայնորեն բացել կարող է ամենից առաջ մեքենաշինությունը: Այն առաջավորը, ինչ ստեղծում է գիտական և ինժեներական միտքը, մեքենաշինությունը կոչված է անհապաղ յուրացնել, մարմնավորել բարձրարդյունավետ, հուսալի մեքենաների, սարքերի, տեխնոլոգիական գծերի մեջ» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXVI համագումարին..., «Հայաստան» հրատ., 1981 թ., էջ 71—72):

Մեքենաշինությունը ձևավորվում և զարգանում է գիտության ու տեխնիկայի հիմքի վրա և իր հերթին վճռական դեր է խաղում դրանց նվաճումների ներդրման ու ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում աշխատանքի մեքենազինվածության մակարդակի բարձրացման ոլորտում: Այն ժողովրդական տնտեսությունն ապահովում է աշխատանքի գործիքներով, նրան մատակարարելով հիմնական ֆոնդերի առավել ակտիվ մասը՝ մեքենաներ, սարքավորումներ և այլն: Ուստի մեքենաշինության զարգացման մակարդակով, նորագույն տեխնիկայի պահանջները բավարարող դրա թողարկած արտադրանքի կառուցվածքով են պայմանավորված որակական և քանակական տեղաշարժերը ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ: Միանգամայն օրինաչափ է, որ 1970—1980 թթ. ՍՍՀՄ արդյունաբերական արտադրանքի ծավալն աճել է շուրջ 1,8 անգամ, իսկ մեքենաշինությանը՝ 2,7 անգամ: Մեքենաշինության մի շարք ենթաճյուղեր՝ ճշգրիտ մեքենաշինություն, սարքաշինություն և այլն, նույն ժամանակամիջոցում ավելի բարձր տեմպերով են զարգացել:

Հայկական ՍՍՀ-ում մեքենաշինությունը, որը արդյունաբերության առաջատար ճյուղն է, իններորդ և տասներորդ հնգամյակների տարիներին աճել է շուրջ 3,2 անգամ, արդյունաբերության ընդհանուր ծավալի 2,1 անգամ աճի պայմաններում: Դրա հետևանքով մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքի տեսակարար կշիռն ավելացել է արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալում: Հանրապետությունում 1970 թ. այն կազմել է 23 տոկոս, իսկ 1980 թ.՝ 28,1 տոկոս: Մեքենաշինության և մետաղամշակման բոլոր ճյու-



digitised by A.R.A.R.@

ղերում արտադրության ծավալը տասներորդ հնգամյակում աճել է 74,5 տոկոսով, այն դեպքում, երբ արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալը մեծացել է 46,2 տոկոսով։

Ըստ ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների, հանրապետությունում արդյունաբերության զարգացումն իրականացվելու է աշխատատար, նվազ նյութատար և նվազ էներգատար ճյուղերի ընդլայնման միջոցով։ Այդ կուրսի իրականացման շնորհիվ ճշգրիտ մեքենաշինությունը կզարգանա առաջանցիկ տեմպերով, և դրա տեսակարար կշիռը հանրապետության արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալում կաճի ու 1985-ին կհասնի 35,6 տոկոսի։ Լուրջ տեղաշարժեր են նախատեսվում ճշգրիտ մեքենաշինության կառուցվածքում։ Այսպես, մետաղահատ հաստոցների թողարկման ընդհանուր ծավալում հատուկ և ծրագրային կառավարում ունեցող հաստոցների արտադրությունը 1985 թվականին, 1980-ի համեմատությամբ, կավելանա 2,4 անգամ, ճշգրիտ մեքենաշինության, ռադիոէլեկտրոնային և այլ ճյուղերում արտադրանքի արտադրության ծավալը նույն ժամանակաշրջանում կաճի 75,0 տոկոսով։

ՍՄԿԿ XXVI համագումարում նշվեց, որ առաջադրված այս խնդիրները հնարավոր է լուծել, եթե գիտատեխնիկական առաջընթացի հետագա զարգացումն ապահովող այնպիսի ճյուղում, ինչպիսին է մեքենաշինությունը, կառավարման և առաջին հերթին պլանավորման մեխանիզմը խթանի արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորումը։ Տասնմեկերորդ հնգամյակի հիմնական ուղղություններում նախատեսվում է և՛ ավելի բարձրացնել գիտական հետազոտությունների արդյունավետությունը, զգալիորեն կրճատել գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման ժամկետները, խորացնել հիմնարար և կիրառական հետազոտությունների կապը արտադրության հետ, իսկ տեխնիկայի նորացման տեմպերը կարագացվեն մեկ և կես անգամ։ Այս առումով հետագա կատարելագործման կարիք ունի գիտատեխնիկական առաջընթացի պլանավորումը, որն իր հերթին կնպաստի հասարակության տնտեսական, սոցիալական և տեխնիկական զարգացման փոխգործողությանը։ Շեշտելով գիտատեխնիկական առաջընթացի պլանավորման դերը, Վ. Ի. Լենինը նշում էր, որ մեզ հարկավոր են, ոչ թե երևակայությունից վերցրած լայն պլաններ, այլ տեխնիկայով ապահովված, գիտությամբ նախապատրաստված պլաններ (տե՛ս Երկեր, հ. 30, էջ 424)։

Ինչպես հայտնի է, գիտատեխնիկական առաջընթացը հասարակության բոլոր արտադրուժերի զարգացման հիմնական ուղղությունն է։ Ուստի դրա արագացմանը պետք է նպատակամղված լինեն ժողովրդական տնտեսության կառավարման, պլանավորման ու խթանման համակարգը կատարելագործելու նպատակով իրականացվող բոլոր միջոցառումները։ Մինչդեռ տակավին չեն հաղթահարված երկրում գիտատեխնիկական առաջընթացի պլանավորման գործում եղած թերությունները։ Այսպես, նոր տեխնիկայի ստեղծման ու ներդրման հարցերը անհրաժեշտ արտացոլում չեն գտնում ժողովրդատնտեսական պլանում, չեն դարձել արտադրության արդյունավետության բարձրացման առաջադրանքների մշակման հիմքը։ Նոր տեխնիկայի ներդրումից ստացվող տնտեսական արդյունքը ոչ թե պլանավորվում է, այլ համարվում է հաշվարկային ցուցանիշ։ Գիտատեխնիկական առաջընթացի պլաններն անհրաժեշտ շարունակություն չեն գտնում արտադրության զարգացման ու դրա տեխնիկական մակարդակի բարձրացման առաջադրանքներում։

Այժմ պլանավորվում է միայն գիտատեխնիկական առաջընթացի զանազան միջոցառումների քանակը։ Քանի որ առանձին միջոցառումներ տարբեր ազդեցություն են ունենում ձեռնարկության գործունեության այս կամ այն տնտեսական ցուցանիշների վրա, ապա իրականում յուրաքանչյուր ներդրվող միջոցառման տնտեսական արդյունքը սահմանվում է առանձին՝ հաշվի չառնելով դրա ներգործությունը մյուս միջոցառումների տնտեսական արդյունավետության վրա։ Ուստի նոր տեխնիկայի ներդրումից ստացվող տնտեսական արդյունքը, որպես կանոն, գնահատվում է մոտավոր կերպով։ Դրանով իսկ բացա-



վում են հնարավորություններն այն ճշգրտելու ձեռնարկության պլանի այնպիսի հիմնական տեխնիկատնտեսական ցուցանիշներով, ինչպիսիք են արտադրանքի թողարկման ծավալը, շահույթը, շահութաբերությունը, աշխատանքի արտադրողականությունը, ֆոնդա և նյութատարողությունը։

Արդ, նոր տեխնիկայի ներդրման պլանում տնտեսական արդյունավետությունը լոկ հաշվարկային ցուցանիշ է, որի հիման վրա մենք դատում ենք ներդրվող տեխնիկայի առավելության մասին՝ փոխարինվող տեխնիկայի համեմատությամբ։ Ինչպես վկայում են հանրապետության մեքենաշինական ձեռնարկություններում կատարված հետազոտությունները, նման հաշվարկները մոտավոր են, որը չի արտացոլում իրերի ռեալ վիճակը։ Մինչդեռ, նոր տեխնիկայի տնտեսական արդյունավետության լրիվ ու ճշգրիտ գնահատականը ձեռնարկություններին կշահագրգռի դրա ո՛չ միայն ներդրմանը, այլև ինտենսիվ օգտագործմանը։

Բացի դրանից, նոր տեխնիկայի ստեղծումն ու ներդրումը պլանավորելու մեթոդական սկզբունքները հնարավորություն չեն ընձեռում ամփոփ ընդգրկելու «հետազոտություն-արտադրություն» ցիկլի բոլոր փուլերը։ Դեռևս նոր տեխնիկայի պլանավորումը հիմնականում իրականացվում է մեկ ճյուղի շրջանակներում։ Մինչդեռ, արդի պայմաններում հանրային արտադրության ոչ մի բնագավառ ի վիճակի չէ ինքնուրույն լուծելու նոր տեխնիկայի ստեղծման, յուրացման ու ներդրման հարցերը։ Այսպես, տեխնիկայի այս կամ այն տեսակի կատարելագործման կամ ստեղծման ժամանակ ելակետը կոնկրետ տվյալ ճյուղի շահերն են, երբեմն անտեսելով ժողովրդատնտեսական շահերը, որի հետևանքով հաճախ ի վնաս որոշ ճյուղերի՝ շահում են մյուսները։

Գիտատեխնիկական առաջընթացի պլանավորման ժամանակ բավարար չափով հաշվի չի առնվում դրա ներգործությունը արտադրության այնպիսի ցուցանիշների վրա, ինչպիսիք են աշխատանքի արտադրողականությունը, թողարկվող արտադրանքի ինքնարժեքը, շահույթը և աշխատողների քանակը, միավոր հզորության էժանացումը և այլն։

Չի լուծված նաև նոր տեխնիկայի պլանավորումը, ֆինանսավորումը և խթանումը արտադրության պլանավորման, ֆինանսավորման և խթանման համակարգի հետ օրգանապես շաղկապելու հարցը։ Որպես կանոն, նոր տեխնիկայի ներդրման միջոցառումները չեն բխում ձեռնարկությունների տնտհաշվարկային շահերից։ Այսպես, յուրաքանչյուր ձեռնարկություն շահագրգռված է շահույթի՝ որպես խթանման ֆոնդերի գոյացման աղբյուրի, արագ աճով, այն դեպքում, երբ նոր տեխնիկայի ներդրումը սկզբնական շրջանում, որպես կանոն, նվազեցնում է շահույթի չափը։ Հիմնականում հենց դա է պատճառը, որ արտադրապլանները սիստեմատիկաբար կատարելու և գերակատարելու դեպքում ևս նոր տեխնիկայի պլանները մեծ մասամբ չեն կատարվում։ Այսպես, եթե տասներորդ հնգամյակի տարիներին մեր հանրապետության արդյունաբերական արտադրության ծավալն աճել է 46,2 տոկոսով, ապա գիտահետազոտական աշխատանքների և նոր տեխնիկայի ներդրման պետական պլանները նույն ժամանակաշրջանում տարեկան միջին հաշվով կատարվում էին 90—95 տոկոսի սահմաններում, իսկ մի քանի կարևոր բաժիններով՝ էլ ավելի ցածր։ Գիտատեխնիկական առաջընթացը պլանավորելիս կարևոր է կոմպլեքսայնորեն լուծել արտադրության բոլոր տարրերի՝ աշխատանքի գործիքների ու առարկաների կատարելագործման, ինչպես նաև աշխատուժի որակավորման բարձրացման խնդիրները։ Արտադրության մեջ հաճախ նոր տեխնիկայի ներդրումից պլանավորված տնտեսական արդյունք չի ստացվում, քանի որ արտադրության տարրերից մեկը կատարելագործելիս միջոցառումներ չեն նախատեսվում դրա հետ փոխկապակցված մյուս տարրերի փոփոխման համար։ Ուստի նոր տեխնիկայի ներդրման հարցերը լուծելիս չպետք է անտեսել արտադրության փոխկապակցված բոլոր տարրերի տեխնիկական զարգացման համամասնությունը, հարկ է ձգտել ռեալ պայմաններ ստեղծելու նոր տեխնիկայի արդյունավետ ներդրման և շահագործման համար։ Այս դեպքում միայն կարող է լրիվ իրացվել նոր տեխնիկայի ներդրումից ստացվող տնտեսական արդյունքը։

Գիտատեխնիկական առաջընթացի պլանավորման հիմնական պրոբլեմնե-



digitised by A.R.A.R.@

## Գաղափարախոսական պայքարի ճակատներում

# ԿՐՈՆԸ ԵՎ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ

**Ս. Հ. ՍԱՐԳՍՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

*ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ ներկա փուլում կապիտալիստական երկրներում առկա դժվարություններն ազդել են նրանց քաղաքականության, այդ թվում նաև արտաքին քաղաքականության վրա։ Վերջին ժամանակներս նկատելիորեն ակտիվացել են լարվածության թուլացման, սպառազինությունների սահմանափակման, Սովետական Միության և սոցիալիզմի մյուս երկրների հետ հարաբերությունների բարելավման հակառակորդները։ Կապիտալիստական որոշ տերություններ, Լ. Ի. Բրեժնևի բնութագրմամբ, նպատակ են դրել հասնել անհասանելիին՝ պատնեշել աշխարհում պրոգրեսի ճանապարհը, իրենց վերադարձնել ժողովուրդների բախտը տնօրինողների դերը։ Նման հավակնություններ ունեն նաև արտասահմանյան որոշ կրոնական կազմակերպություններ, որոնք ակտիվ դեր են խաղում ժամանակակից գաղափարախոսական պայքարում և որոնց մի մասը կանգնած է միջազգային ռեակցիայի դիրքերում։*

*Ֆ. Էնգելսի բնորոշմամբ, կրոնը ոչ այլ ինչ է «եթե ոչ այն արտաքին ուժերի ֆանտաստիկ արտացոլումը մարդկանց գլուխներում, որոնք իշխում են մարդկանց վրա նրանց ամենօրյա կյանքում, մի արտացոլում, որի մեջ երկրային ուժերը վերերկրային ձև են ընդունում» (Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, «Հայաստան» հրատ., 1967, էջ 425)։ Կառուցվածքային առումով կրոնը բաժանվում է կրոնական գիտակցության, պաշտամունքի և կազմակերպությունների։ Կրոնական գիտակցության հիմնական հատկանիշը հավատն է գերբնական ուժերի գոյության նկատմամբ։ Կրոնական պաշտամունքի օբյեկտը գերբնականն է, իսկ պաշտամունքային գործունեության տարրերը ծեսերն են, կրոնական տոները, զոհաբերությունը և այլն։ Կրոնական կազմակերպությունը որոշակի դավանանքի տեր մարդկանց միավորումն է (եկեղեցի, աղանդ), որը նախնադարում համընկել է ցեղային կազմակերպության հետ, իսկ դասակարգային հասարակությունում դարձել է պետական հաստատություն։*

*Կրոնն առաջացել է նախնադարյան հասարակությունում բնական և հասարակական ուժերի դեմ մարդու հարաբերական անզորության պատճառով։ Չկարողանալով հասկանալ իրական երևույթները՝ մարդը մտացածին կապեր ու գերբնական հատկություններ է փնտրել այնտեղ, ուր իշխել է օբյեկտիվ օրինաչափությունը։ Երևակայության միջոցով, իրականության խեղաթյուր արտացոլման ընթացքում, արտացոլվածը կտրելով օբյեկտիվ հիմքից և միակողմանիորեն ուռճացնելով, մարդը գիտակցությամբ կերպավորված հասկացություններն օժտել է ինքնուրույն, սուբստանցիոնալ գոյությամբ, այն հանգեցնելով գերբնականին։*

*Խոսելով կրոնի իմացաբանական արմատների մասին, Վ. Ի. Լենինը նշում է, որ «այն անհող չէ, այն անպտուղ ծաղիկ է, անտարակույս, բայց մի ան-*



*պտուղ ծաղիկ, որը բուսնում է մարդկային... իմացության կենդանի ծառի վրա» (Երկեր, հ. 38, էջ 461)։ Այստեղից էլ բխում է կրոնի և փիլիսոփայական իդեալիզմի իմացաբանական արմատների ընդհանրությունը։*

*Կրոնական պատկերացումների ծագման համար մեծ նշանակություն են ունեցել նաև մարդկային հույզերն ու ապրումները (սարսափ, վախ, կեղեքում, միայնություն, դժբախտություն, մխիթարվելու ձգտում, երջանկության զգացում և այլն)։ Սակայն կրոնի իմացաբանական և հոգեբանական հնարավորությունները իրականություն են վերածվում միայն որոշակի սոցիալ-տնտեսական պայմանների առկայության դեպքում։ Նախնադարյան հասարակությունում կրոնը սոցիալականորեն պայմանավորված էր արտադրաուժերի թույլ զարգացմամբ, բնության և միմյանց նկատմամբ մարդկանց հարաբերությունների սահմանափակությամբ։ Ինչպես Լենինն է նշել, նախնադարում մարդը գտնվել է բնության ուժերի ահ ու սարսափի ներքո։ Մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները հաճախ են շեշտել այն իրողությունը, որ կրոնի գոյավորման ընթացքում խոշոր դեր է խաղացել նաև դասակարգային և առհասարակ հասարակական կեղեքումը։ «Աշխատավոր մասսաների սոցիալական ճնշվածությունը, նրանց առերևույթ կատարյալ անօգնականությունը կապիտալիզմի կույր ուժերի հանդեպ, որն ամեն օր և ամեն ժամ հազարապատիկ ավելի ամենասոսկալի տառապանքներ, ամենավայրագ տանջանքներ է պատճառում շարքային բանվոր մարդկանց, քան պատերազմների, երկրաշարժերի և այլնի նման ամեն տեսակ արտակարգ իրադարձությունները՝ ահա թե որտեղ է կրոնի արդի ամենախոր արմատը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 17, էջ 505)։*

*Ըստ կրոնի սոցիալական էության մարքսյան դասական ձևակերպման, «կրոնը մարդու ինքնագիտակցությունն է և ինքնազգացումը, որը կամ դեռ իրեն չի գտել, կամ արդեն նորից է կորցրել իրեն։ Բայց մարդը վերացական, աշխարհից դուրս ինչ-որ մի տեղ ապաստանած էակ չէ։ Մարդը դա մարդու* աշխարհն *է, պետությունը, հասարակությունը։ Այդ պետությունը, այդ հասարակությունը ծնում են կրոն,* աղճատված աշխարհայացք, *քանի որ նրանք իրենք էլ* աղճատված աշխարհ *են։ Կրոնն այդ աշխարհի ընդհանուր տեսությունն է, նրա հանրագիտարանային համառոտումը, նրա տրամաբանությունը հանրամատչելի ձևով, նրա սպիրիտուալիստական* point d'honneur*-ը (պատվո խնդիրը), նրա խանդավառությունը, նրա բարոյական սանկցիան, նրա հանդիսավոր լրացումը, մխիթարության և արդարացման համար նրա համընդհանուր հիմքը... կրոնի դեմ պայքարը անուղղակիորեն պայքար է* այն աշխարհի *դեմ, որի հոգևոր* ափոփանքն *է կրոնը»* (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 1, стр. 414—415)։

*Էթնիկական հանրությունների ընդգրկման սահմանները նկատի ունենալով, կրոնն անցել է տոհմացեղային կամ նախնադարյան հասարակության հավատալիքների (մոգություն, ֆետիշիզմ և այլն), ազգային կամ մեկ էթնիկական կազմավորմանը վերաբերող կրոնների (հուդայականություն, հինդուիզմ և այլն) և համաշխարհային կրոնների (բուդդայականություն, քրիստոնեություն, իսլամ) փուլերը։ Համաշխարհային կրոնները, առաջանալով տարբեր հասարակարգերում և ունենալով առաջացման տարբեր սոցիալ-քաղաքական և գաղափարական պատճառներ, թեև բզկտվել են, պառակտվել միմյանց թշնամի բազմաթիվ ուղղությունների, այնուամենայնիվ, հարաբերական ինքնուրույնության, պահպանողականության և ավանդույթի շնորհիվ փոխանցվել են և հարմարվել նաև մյուս ֆորմացիաներին, իսկ նրանց կազմակերպություններն ակտիվ դեր են կատարում նաև այսօր։*

*Քրիստոնեությունը ստրկության փլուզման արգասիքն էր, բայց դարձավ ֆեոդալիզմի գաղափարախոսությունը, ապա հարմարվեց կապիտալիզմին։ Արդի պայմաններում սոցիալական տարբեր հասարակարգերում, հասարակական ու քաղաքական տարբեր կողմնորոշումներ ունեն քրիստոնեական եկեղեցիները։ Սոցիալիստական երկրներում և հատկապես Սովետական Միությունում գործող եկեղեցիները, սոցիալիզմի գաղափարախոսության ազդեցության ներքո, պայքարում են հանուն խաղաղության։ Մինչդեռ կապիտալիստական երկրներում գործող եկեղեցիների մեծ մասը Վատիկանի գլխավորությամբ շա-*



digitised by A.R.A.R.@

բողոքը կրոնում կապվում է հանդերձյալ աշխարհի հետ և կորցնում իր հեղափոխական նշանակությունը։

Էնգելսը, խոսելով վաղ քրիստոնեության առանձնահատկությունների մասին, նշել է, թե կան որոշ արտաքին նմանություններ դրա և իր ժամանակի բանվորական շարժումների միջև։ Միաժամանակ նկատել է, որ քրիստոնեությունը փրկությունը կապում է հանդերձյալ աշխարհի հետ, իսկ բանվոր դասակարգի սոցիալական շարժումը՝ այս աշխարհի, հասարակության վերակառուցման հետ։ Եվ այնուհետև՝ քրիստոնեությունը միայն մեկ հավասարություն գիտի, դա ստոր առջև մարդկանց հավասարությունն է իրենց մեղքի բեռով։ Վաղ քրիստոնեությունը ցանկանում էր «սոցիալական վերակառուցում իրականացնել ոչ թե այս աշխարհում, այլ հանդերձյալ կյանքում՝ երկնքում, մահվանը հաջորդող հավիտենական կյանքում՝ «հազարամյա թագավորությունում...»» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 22, стр. 468)։ Լենինը նույնպես շեշտել է վաղ քրիստոնեության դեմոկրատական ոգին, սակայն երբ քրիստոնեությունը դարձել է պետական կրոն, այն մոռացել է իր նախկին միամտությունները՝ հեղափոխական-դեմոկրատական ոգով հանդերձ։

«Եթե Աստվածաշնչից,— նշել է Էնգելսը,— որոշ տեղեր անգամ կարող են մեկնաբանվել հօգուտ կոմունիզմի, ապա նրա ուսմունքի ամբողջ ոգին, սակայն, միանգամայն թշնամական է կոմունիզմին, ինչպես և ամեն մի բանական ձեռնարկման նկատմամբ» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 1, стр. 532)։ Կամ. «Քրիստոնեության սոցիալական սկզբունքներն արդարացնում էին անտիկ ստրկությունը, փառաբանում միջնադարյան ճորտատիրությունը և կարող են նաև, անհրաժեշտության դեպքում, պաշտպանել, թեկուզև ողորմելի ծամածռություններով, պրոլետարիատի ճնշումը» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 4, стр. 204—205)։ Գիտական կոմունիզմի հիմնադիրները նկատել են, թե միջնադարյան ժողովրդական շարժումները ծերացող տնտեսակարգի վրա հարձակվելու համար սքողվում էին կրոնական քողի տակ։ Հերետիկոսական շարժումների կրոնական շղարշը դրանց թերզարգացած լինելու հետևանք էր։

Պատմության զարգացման վաղ փուլերում կրոնն իշխող դիրք է գրավել ժողովուրդների կյանքում՝ ազգային ինքնագիտակցության նվազ զարգացման պատճառով։ Ներազդելով տնտեսական, մշակութային և քաղաքական կյանքի վրա, կրոնն իր հաստատություններով հաճախ հանդես է գալիս որպես ժողովրդական շահերի ու ազգային ինքնագիտակցության կրող։ Ուստի և մարդկանց ազգային ու կրոնական շահերն ու պատկերացումները հաճախ նույնացվել են, ձուլվել միմյանց կամ փոխարինվել մեկը մյուսով։

Լենինը, բարձր գնահատելով Տոլստոյի գեղարվեստական հանճարը, այնուամենայնիվ խստիվ քննադատել է նրա «աստվածաշինարարական» հայացքները, որոնց միջոցով, իբրև թե, հնարավոր է վերացնել սոցիալական չարիքը։ Լենինն ամենայն որոշակիությամբ ասել է, որ մեր օրերում Տոլստոյի ուսմունքի իդեալականացման ցանկացած փորձ, ասկետիզմի և քվիետիզմի նրա քարոզները պատճառում են ամենաանմիջական և ամենախոր չարիք։ Եվ այնուհետև, պրոլետարիատը «աշխատավորների և շահագործվողների մասսաներին կբացատրի պետության, եկեղեցու, հողի մասնավոր սեփականության տոլստոյական քննադատության նշանակությունը,— ոչ թե նրա համար, որպեսզի մասսաները սահմանափակվեն ինքնակատարելագործմամբ և հառաչանքով աստվածային կյանքի մասին, այլ նրա համար, որպեսզի նրանք ոտքի ելնեն նոր հարված հասցնելու ցարական միապետության ու կալվածատիրական հողատիրությանը... Նա մասսաներին կպարզաբանի կապիտալիզմի՝ տոլստոյական քննադատությունը ոչ թե նրա համար, որպեսզի մասսաները սահմանափակվեն անեծքներով կապիտալի և իշխանության հասցեին, այլ նրա համար, որպեսզի նրանք սովորեն իրենց կյանքի ու իրենց պայքարի յուրաքանչյուր քայլում հենվել կապիտալիզմի տեխնիկական ու սոցիալական նվաճումների վրա, սովորեն համախմբվել սոցիալիստական մարտիկների միասնական միլիոնանոց բանակի մեջ, որոնք կտապալեն կապիտալիզմը և կստեղծեն նոր հասարակություն՝ առանց ժողովրդի աղքատության, առանց մարդու կողմից մարդու շահագործման» (ԵԼԺ, հ. 20, էջ 27—28)։



Հայտնի է, որ եկեղեցին, որպես կրոնական հաստատություն, հետադիմական դեր է խաղում և, տվյալ դեպքում, եկեղեցու ու կրոնի ֆունկցիաները համընկնում են։ Սակայն եկեղեցին կրոնական հաստատություն լինելով հանդերձ որոշ դեպքերում կատարում է ոչ կրոնական՝ քաղաքական կազմակերպության ֆունկցիաներ և դասակարգային հասարակության մեջ հանդես գալիս որպես որոշակի քաղաքական կազմակերպություն ու ներկայացնում այս կամ այն դասակարգի գաղափարախոսության կրողը և այդ պատճառով էլ նրա դերը պետք է գնահատել հասարակության մեջ այն դասակարգի խաղացած դերով, որին ներկայացնում է եկեղեցին։ Մինչև կապիտալիզմը, ազգային ինքնագիտակցության ոչ բավարար զարգացման հետևանքով, կրոնական ու ազգային շահերը համընկել կամ փոխարինվել են միմյանցով։ Երբ ազգային շահերը դրսևորվել են եկեղեցական շահերի տեսքով, ապա այն կարող էր դրական դեր խաղալ, ինչպես, ասենք, գրերի գյուտի, Վարդանանց պատերազմում հայ եկեղեցու խաղացած դերի, բալկանյան երկրներում ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումներին եկեղեցու մասնակցության և այլ դեպքերում։ Երբ կրոնական շահերն են փոխարինվում ազգային շահերով, այդ դեպքում արդեն եկեղեցին ազգի ներսում կարող է խիստ բացասական դեր խաղալ։ Նույնիսկ այն դեպքերում, երբ եկեղեցին, իրականացնելով ոչ կրոնական ֆունկցիաներ, օբյեկտիվորեն կատարում է դրական դեր, չի դադարում նրա գաղափարական բացասական ներգործությունը հասարակության վրա։

Մարդու պրոբլեմի և հումանիզմի ըմբռնման հարցերում ևս կրոնը հաճախակի հարում է հակակոմունիզմին։ Աստվածաբանները հակակոմունիզմի գաղափարախոսների հետ միասին հայտարարում են, թե, իբր, մարքսիզմը կյանքի արժույթների, մարդու ճակատագրի, հետևապես նաև հումանիզմի հարցերով չի զբաղվում, թե ուշադրությունը կենտրոնացնում է տեխնիկական գործոնների, հասարակական հարաբերությունների վրա, ուր, իբր, կորչում է անձի անհատականությունը։ Իրականում պատկերն արմատապես հակառակն է։ Սոցիալիստական հեղափոխության մարքսիստական տեսությունը գիտականորեն հիմնավորում է մարդկանց շահագործման վերացման և նրանց միջև իսկական հումանիստական հարաբերությունների հաստատման անհրաժեշտությունը, որտեղ «յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, «Հայաստան» հրատ., 1972, էջ 164)։

Մարքսիզմը ռեալ հումանիզմի մարմնացումն է, որովհետև առաջադրում է հասարակության հեղափոխական վերակառուցման խնդիրը, մշակում սոցիալական իրականությունը հեղափոխականորեն վերափոխելու տեսությունը և այն իրագործում կյանքում։ Մինչդեռ հումանիզմի մասին բուրժուական, ռևիզիոնիստական և կրոնական վերացական ուսմունքները «տեսական» խորհրդածություններից այն կողմ չեն անցնում։ Մարքսիզմը մարդուն համարում է կոնկրետ, որոշակի սոցիալական միջավայրի, որոշակի դասակարգային պատկանելության կրող, կոնկրետ սոցիալական պայմանների արգասիք։ Մարքսիզմը հումանիզմի հարցերը լուծում է անհատի սոցիալական և կենսաբանական առանձնահատկությունների միասնականության մեկնակետից։ Մինչդեռ բուրժուական փիլիսոփայական հոսանքներում, հատկապես կրոնական գաղափարախոսության մեջ շեշտված է սոցիալ-կենսաբանական դուալիզմը։ Մարքսիստական հումանիզմն արտահայտվում է նաև կոլեկտիվիզմում, որովհետև այն հիմնվում է անհատի ու կոլեկտիվի, անհատի ու հասարակության ամուր դաշինքի վրա։ Այդ առթիվ Մարքսը գրում է. «Միայն կոլեկտիվի մեջ յուրաքանչյուր անհատի համար գոյություն ունեն այն միջոցները, որոնք նրան հնարավորություն են տալիս բազմակողմանիորեն զարգացնելու իր ձիրքերը և, հետևաբար, միայն կոլեկտիվի մեջ է հնարավոր անձի ազատությունը» (նույն տեղը, հ. 1, էջ 77։)

Հակակոմունիզմի գաղափարական զինանոցում կրոնը ուրույն տեղ է գրավում, և դրա դեմ պայքարը մարքս-լենինյան գաղափարախոսության առաջնահերթ խնդիրներից է։

---

digitised by A.R.A.R.@

Կուսակցական շինարարության

տեսություն և պրակտիկա

# ՏԵՍՈՒԹՅԱՆ ԵՎ ԿՅԱՆՔԻ ԿԱՊԻ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՀԱՄԱՐ

**ՄՈՎՍ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ**
ՀԿԿ կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրահանգիչ

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԻԿ համակողմանիորեն ուսումնասիրում են ՍՄԿԿ XXVI համագումարին ներկայացված Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը, որով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը: Տեսական ու գործնական հսկայական կարևորություն ունեցող այս փաստաթղթում վառ կերպով ցույց է տրված, թե ինչպիսի վճռականությամբ և հետևողականությամբ է կոմունիստական կուսակցությունն իրականացնում խաղաղության ու ստեղծարար աշխատանքի քաղաքականությունը, որն ամբողջովին բխում է ժողովրդի կենսական շահերից: Հաշվետու զեկուցման մեջ նոր ուժով իր արտացոլումն է գտել կուսակցության անփոփոխ կուրսը՝ ուղղված աշխատավորների բարեկեցության անշեղ բարձրացմանը: Այդ փաստաթղթում ամփոփված են անցած հնգամյակի արդյունքները, նշված են երկրի տնտեսական և սոցիալական հետագա զարգացումն ապահովելու գործում կոմունիստների, բոլոր աշխատավորների անելիքները:*

*ՍՄԿԿ XXVI համագումարը պատասխանատու, պատվավոր խնդիրներ է դրել գաղափարախոսական բնագավառի աշխատողների, այդ թվում և պրոպագանդիստների առջև. նրանց պարտքն է խորությամբ պարզաբանել, պրոպագանդել համագումարի նյութերի հիմնական դրույթներն ու եզրակացությունները, օգնել յուրաքանչյուր ունկնդրի՝ ճիշտ պատկերացնելու իր անելիքները մեր երկրի տնտեսական հզորության համար մղվող համաժողովրդական պայքարում: «Պրոպագանդիստը,— ասաց ընկ. Լ. Ի. Բրեժնևը XXVI համագումարում,— գլխավոր դեմքն է կուսակցական ուսուցման սիստեմում: Հենց նրանից է մեծապես կախված, թե ինչպիսիք կլինեն սեմինարները, քաղդպրոցները, համալսարանները»* (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXVI համագումարին, *«Հայաստան» հրատ., 1981 թ., էջ 128):*

*Համագումարի ամբիոնից իրենց աշխատանքին տրված այս բարձր գնահատականով ոգևորված՝ պրոպագանդիստները մասսաներին են հասցնում մեր գաղափարների ու գործերի մեծությունն ու վեհությունը: Հանրապետության շուրջ 35 հազար 500 պրոպագանդիստներ համագումարից անմիջապես հետո ձեռնամուխ են եղել նրա փաստաթղթերի ու նյութերի, մեր կուսակցության վարած ներքին և արտաքին քաղաքականության պարզաբանմանը, օգնում են ունկնդիրներին ճիշտ ընկալելու և ճիշտ գնահատելու հասարակական կյանքի երևույթները, մոբիլիզացնում են նրանց ուժերը կոլեկտիվների առջև ծառացած կոնկրետ խնդիրները լուծելու համար:*

*Հանրապետության լավագույն պրոպագանդիստների թվում է Լենինականի ցուլպեղենի արտադրամիավորման կուսկազմակերպության անդամ Արտյուշա*



*Պետրոսյանը: Շուրջ երեսուներկու տարի է, ինչ նա այս ձեռնարկությունում է: Անբասիր աշխատանքի համար արժանացել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանի, «Հանրապետության վաստակավոր ռացիոնալիզատորի» կոչման, պարգևատրվել պատվոգրերով: Կոլեկտիվում հարգում են Ա. Պետրոսյանին նրա աշխատասիրության, նախաձեռնողության, դժվարությունների առջև չընկրկելու համար: Մի ժամանակ ինքն էր մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի ունկնդիր, բայց արդեն յոթ տարի է, ինչ ստանձնել է պրոպագանդիստի պատվավոր պարտականությունը: Նրա՝ իբրև պրոպագանդիստի հաջողությունն առաջին հերթին պայմանավորված է իր բարոյաքաղաքական կերպարով, հասարակական պարտքի նկատմամբ ունեցած պատասխանատվության խոր զգացումով: Նրա ղեկավարած դպրոցի բոլոր ունկնդիրները լավ գիտեն, որ իրենց պրոպագանդիստի խոսքը գործից չի առանձնանում, որ նրա արտահայտած մտքերն անմիջականորեն դրսևորվում են պրակտիկ գործողություններում: Պրոպագանդիստից ետ չեն մնում դպրոցի 25 ունկնդիրները, որոնք բոլորն էլ արտադրության առաջավորներ են, լավագույն գործերի հեղինակներ:*

*Կուսակցական լուսավորության գլխավոր հարցն այսօր նրա արդյունավետության բարձրացումն է: Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, դա նշանակում է կուսակցական քաղաքականությունը միաձուլել մասսաների գործունեության հետ, գործնականում ապահովել կուսակցության գաղափարատեսական, քաղաքական-դաստիարակչական, կազմակերպչական և տնտեսական աշխատանքի միասնությունը:*

*Որտեղ էլ աշխատելիս լինի պրոպագանդիստը՝ արդյունաբերական ձեռնարկությունում, թե շինարարական հրապարակում, սովխոզում, կոլտնտեսությունում, թե՛ ուսումնական հաստատությունում, նա ուսուցման բարձր արդյունավետությունը կարող է ապահովել միայն այն դեպքում, եթե այն ծառայեցնում է սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման գործում ունկնդիրների ստեղծագործական նախաձեռնությունների զարգացմանը, յուրաքանչյուրի մոտ աշխատանքի, սոցիալիստական ունեցվածքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակմանը: Կարելի է բազմաթիվ օրինակներ բերել, թե քաղաքական ուսուցումն ինչպես է նպաստում կադրերի աշխատանքային, հասարակական ակտիվության աճին: Այդ աճի չափանիշներ կարող են լինել պլանային առաջադրանքների կատարումն արտահայտող ցուցանիշները, արտադրության առաջավորների, նորարարների, ռացիոնալիզատորների, կոմունիստական աշխատանքի հարվածայինների թվի ավելացումը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դրսևորումները, կոլեկտիվիզմի, ընկերական փոխօգնության սկզբունքների արմատավորումը, թերությունների դեմ անհաշտվողականության մթնոլորտի ստեղծումը և այլն: Հանրապետության կուսակցական կազմակերպությունները հոգ են տանում, որ աշխատանքային կոլեկտիվներում ստեղծվի առողջ բարոյահոգեբանական մթնոլորտ: Այդ խնդիրն իրականացնողները առաջին հերթին կոմունիստներն են, բոլոր պրոպագանդիստները: Նրանք լավ են հասկանում, որ բնավ միևնույնը չէ, թե պլանային առաջադրանքները ինչ գնով են կատարվում կամ գերակատարվում, կարևոր է նաև, թե դա ինչպես, ինչ պայմաններում է ձեռք բերվում:*

*Առողջ, ստեղծագործ աշխատանքի մթնոլորտի ստեղծման համար ուսանելի գործ է արվում Կիրովականի ավտոգենմաշ գործարանում: Ձեռնարկության բոլոր պրոպագանդիստներն աշխատում են «Պրոպագանդիստը՝ հնգամյակին» նշանաբանով, օգնում իրենց ունկնդիրներին՝ ստանձնելու հիմնավորված սոցիալիստական պարտավորություններ, արտադրության մեջ ներդնելու առաջավոր փորձը, կատարելու տնտեսական վերլուծություններ, քննադատաբար գնահատելու ինչպես կոլեկտիվի, այնպես էլ իրենց ծավալած գործունեությունը արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման ասպարեզում:*

*Փականագործ, կոմունիստական աշխատանքի հարվածային Սուրեն Խըլղաթյանը առաջավոր է նաև քաղաքական ուսուցման ասպարեզում: Նա կարդում և խնամքով կոնսպեկտավորում է սկզբնաղբյուրները, կուսակցական փաստաթղթերը, ձգտում է ստացած գիտելիքները ներդնել պրակտիկայում:*



digitised by A.R.A.R.@

խլղաթյանը մի մեծ խումբ առաջավորների թվում 1980 թվականի ապրիլից արտադրանք է թողարկում տասնմեկերորդ հնգամյակի հաշվին: Գործարանի մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի ակտիվ ունկնդիրներից են նաև կոմունիստներ, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, ձուլող բանվոր Բորիս Սարգսյանը, քաղաքային սովետի դեպուտատներ, փականագործներ Վաղարշակ Մեհրաբյանը, Մարիետա Աթոյանը, ավտոմատների կարգավորող Արշալույս Ղալանչյանը, գործիքագործ Սարգիս Խաչատրյանը և շատ ուրիշներ: Նրանք միշտ ընթանում են սոցիալիստական մրցության առաջավորների շարքում, այդ մարդկանց հատուկ է բարձր պատասխանատվության զգացումը ոչ միայն իրենց հանձնարարված գործի, այլև ձեռնարկության պատվի, հեղինակության համար: Նրանք պայքարում են ամեն մի տեղամասում օրինակելի կարգուկանոնի հաստատման, արդյունավետ աշխատանքի պայմանների ստեղծման համար:

Վ. Ի. Լենինը, դիմելով կուսակցական պրոպագանդիստներին, խորհուրդ էր տալիս մարքս-լենինյան տեսության յուրաքանչյուր դրույթ վերածել գործողության ղեկավարման միջոցի: Հարկավոր է կարողանալ, նշում էր նա, կոմունիզմը սերտած, պատրաստի ֆորմուլաներից, խորհուրդներից, դեղատոմսերից, առաջադրություններից, ծրագրերից վերածել անմիջական աշխատանքը միավորող կենդանի գործի, կոմունիզմը դարձնել գործնական աշխատանքի ուղեցույց (տե՛ս Երկեր, հ. 31, էջ 353):

Ղեկավարվելով լենինյան այս ցուցումով՝ շատ պրոպագանդիստներ, կուսակցական կազմակերպություններ իրականացնում են տեսության և պրակտիկայի միասնության ամրապնդման, գիտելիքները համոզմունքների, գործնական քայլերի վերածելու արդյունավետ միջոցառումներ: Ալավերդու կարի ֆաբրիկայում բավականաչափ մեծ էր կադրերի հոսունությունը, ցածր էր աշխատանքային կարգապահությունը: Այդ ամենը խիստ բացասաբար էր անդրադառնում պլանային առաջադրանքների կատարման վրա: Ֆաբրիկայի կուսկազմակերպության բյուրոյի նախաձեռնությամբ, ստեղծված վիճակը հանգամանորեն քննարկվեց կուսժողովում, որին մասնակցում էին նաև քաղաքական ուսուցման դպրոցների ունկնդիրները: Պրոպագանդիստների ղեկավարությամբ նրանց կատարած ուսումնասիրություններից պարզվեց, որ աշխատանքային կարգապահությունը խախտողները, պլանային առաջադրանքները թերակատարողները հիմնականում նրանք են, ովքեր դպրոցն ավարտելուց հետո բուհ չեն ընդունվել և ֆաբրիկա են եկել միայն «աշխատանքային ստաժի» համար: Ունկնդիրները հանդես եկան մի շարք կոնկրետ առաջարկություններով, որոնց մի զգալի մասը կենսագործվեց, բարելավվեցին աշխատանքային և կուլտուրական հանգստի պայմանները, ուժեղացվեց վարպետ-դաստիարակների շեֆությունը նորեկ բանվորների նկատմամբ և այլն: Գաղափարադաստիարակչական աշխատանքի ամբողջ համակարգում առանձնակի տեղ հատկացվեց մարդկանց հետ տարվող անհատական աշխատանքին: Այդ ամենի շնորհիվ կտրուկ ձևով նվազեցին տարբեր տեսակի խախտումները, անկարգապահության դրսևորումները: Այսօր ձեռնարկությունը շրջանի առաջավոր կոլեկտիվների շարքում է: Ֆաբրիկայի երիտասարդ բանվորներից շատերը հանդես են եկել հայրենասիրական նախաձեռնությամբ՝ անձնական հնգամյակը կատարել 4—4,5 տարում:

Ուսուցման հաջողությունը պայմանավորված է ինչպես պրոպագանդիստի տեսական պատրաստվածությամբ, այնպես էլ նրանով, թե նա ինչպես է կարողանում աշխատել մարդկանց հետ: Եթե նա խոսում է անկեղծ, համբերությամբ լսում է ունկնդիրներին, նրանց բոլոր հարցերին տալիս է սպառիչ պատասխաններ, ապա նա հարգանք կվայելի ոչ միայն իր գիտելիքների, առողջ մտածողության, այլ նաև այն բանի համար, որ լավ է հասկանում կյանքը, չի վախենում դժվար և, այսպես կոչված, «սուր հարցերից», օգնում է ունկնդիրներին՝ հաղթահարելու նրանց առջև ծառացած դժվարությունները: Հակառակ դեպքում, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, «ոչ մի քայլ չի կարելի անել ոչ պրոպագանդայի, ոչ ագիտացիայի, ոչ էլ կազմակերպման գործում» (Երկեր, հ. 16, էջ 303):



Երևանի էլեկտրատեխնիկական գործարանի պրոպագանդիստ Ժորա Կարապետյանը ձեռնարկություն է եկել մեծ Հայրենականի հաղթական ավարտից հետո: Աշխատանքին զուգընթաց սովորել և ավարտել է պոլիտեխնիկական ինստիտուտը: Նրան բնորոշ են մարդկանց նկատմամբ հոգատար լինելու, աշխատանքում անձնական օրինակ ցույց տալու, թերությունների հանդեպ անզիջում պայքար մղելու հատկությունները: Շուրջ 23 տարի է, ինչ նա պրոպագանդիստ է, ղեկավարում է մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցը, որի բոլոր ունկնդիրներն էլ հաճությամբ են մասնակցում պարապմունքներին: Պրոպագանդիստի հետ ունեցած ամեն մի հանդիպումից հետո նրանք իրենց զգում են գաղափարապես ավելի համոզված, ավելի պատրաստ ու վստահ իրենց ուժերի նկատմամբ: Ունկնդիրները սիրով ուսումնասիրում են մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների աշխատությունները, ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, հանդես գալիս ռեֆերատներով, մասնակցում կոլեկտիվում տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքներին:

Քաղպարապմունքները հետաքրքրական ձևով են անցնում նաև Աբովյանի շրջանի Գետաշենի կոլտնտեսության կուսկազմակերպության մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցում, որի պրոպագանդիստն է Գուրգեն Գալստյանը: Նրա վարած յուրաքանչյուր պարապմունք բովանդակալից է, գաղափարապես հագեցած: Նա հոգ է տանում, որպեսզի ամեն մի ունկնդիր կարողանա տեսական դրույթները հիմնավորել կոնկրետ փաստերով, օրինակներով: Պրոպագանդիստի օգնությամբ ունկնդիրները կատարում են կոլտնտեսային արտադրության առանձին ճյուղերի տնտեսական գործունեության վերլուծություններ, անում արժեքավոր առաջարկություններ արտադրության արդյունավետության բարձրացման նպատակով: Եվ եթե այսօր կոլտնտեսությունը հասել է արտադրական բարձր ցուցանիշների, ապա դրանցում իրենց արժանի ներդրումն ունեն նաև քաղուսուցման դպրոցի ունկնդիրները:

Քաղաքական գրականության վրա ինքնուրույն աշխատելը մարդկանց մոտ գաղափարախոսական աշխատանքի ճաշակ է պատվաստում, օգնում է ճիշտ գնահատելու կյանքում տեղի ունեցող երևույթները: Ինչպես Վ. Ի. Լենինն էր ուսուցանում, «Միայն այն ժամանակ, երբ դուք կսովորեք ինքնուրույնաբար գլուխ հանել այս հարցից,— այն ժամանակ միայն դուք կարող եք ձեզ բավականաչափ հաստատ համարել ձեր համոզմունքներում, և դրանք բավականաչափ հաջող պաշտպանել ում հանդեպ էլ ուզում է լինի և երբ էլ ուզում է լինի» (Երկեր, հ. 29, էջ 580):

Ցավոք, առանձին դպրոցներում, սեմինարներում անտեսվում է գրքի վրա ինքնուրույն աշխատելու մեթոդը, որի հետևանքով մարդուն հուզող հարցը կամ երևույթը բավարար խորությամբ չեն ընկալվում ու մեկնաբանվում: Խոսքի և գործի միջև խզումը զգալիորեն թուլացնում է գործադրվող դաստիարակչական, պրոպագանդիստական ջանքերի ուժը: Ինչպես նշվեց այս տարվա ապրիլին ՍՄԿԿ Կենտկոմում անցկացված գաղափարախոսական աշխատողների համամիութենական սեմինար-խորհրդակցությունում, կուսակցական շատ կոմիտեներ հաշտվում են այն բանի հետ, որ ուսուցումը թույլ է շաղկապվում սոցիալ-տնտեսական հրատապ պրոբլեմների լուծման հետ, իսպառ չեն վերացված ձևականության, սերտողականության դրսևորումները, որ պարապմունքներում հաճախ բացակայում են կարծիքների աշխույժ փոխանակումը, ստեղծագործական բանավեճերը և այլն: Այդպիսի թերություններ կան նաև մեր հանրապետության մի շարք կուսակցական կազմակերպություններում գործող քաղուսուցման, տնտեսագիտական կրթության դպրոցներում և սեմինարներում: Յուրաքանչյուր պրոպագանդիստ պետք է քաջ գիտակցի, որ պրոպագանդայի ուժը կյանքի հետ նրա սերտ կապի մեջ է: Այդ կապի ստեղծման, աշխատավորների ուժերի մոբիլիզացման գործում ավելի է մեծանում կուսակցության մարտիկի՝ պրոպագանդիստի դերը: Գաղափարախոսական բնագավառի յուրաքանչյուր աշխատողի գործունեության նշանաբանը պետք է լինի լենինյան այն ցուցումը, որ ագիտատորները և պրոպագանդիստները հաճախ իրենց վրա պետք է վերցնեն նաև կազմակերպչի ֆունկցիաները:

Համամիութենական խորհրդակցությունում նշվեց, որ անհրաժեշտ է



digitised by A.R.A.R.@

# ԳԼԽԱՎՈՐ ԽՆԴԻՐԸ

**ՎԻԼԵՆՍ. ԱՍԱՏՐՅԱՆ**
Կոշիկի «Մասիս» արտադրամիավորման
կուսկոմիտեի քարտուղար

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ապրում ու աշխատում է ՍՄԿԿ XXVI համագումարի կանխագծումների մոբիլիզացնող ներգործության ներքո և պայքարում է դրանց իրականացման համար։ Համագումարը ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը համարեց տնտեսական ստրատեգիայի առանցքը և այդ առնչությամբ հատկապես լուրջ պահանջներ առաջադրեց արտադրական կոլեկտիվներին։ Ինչպես նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, բարեկեցության բարձրացման ասպարեզում կուսակցության ջանքերի մեջ առաջնակարգ նշանակություն են ստանում ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ընդլայնումն ու դրանց որակի բարելավումը։ Նա կուսկազմակերպությունների, տնտեսական ղեկավարների ուշադրությունը հրավիրեց այն բանի վրա, որ տարեցտարի չեն կատարվում ժողովրդական սպառման շատ ապրանքների, այդ թվում կաշվե կոշիկի թողարկման պլանները և խնդիր դրեց այդ գործում անհապաղ կարգուկանոն հաստատել։*

*Կոշիկի «Մասիս» արտադրամիավորումը երկրի այն ձեռնարկություններից է, որոնք տոն են տալիս ճյուղի զարգացմանը, որոշում նրա առաջընթացի միտումները։ Միավորման կոլեկտիվը ժամկետից մոտ յոթ ամիս շուտ՝ 1980 թ. հունիսի 4-ին, զեկուցեց տասներորդ հնգամյակի արտադրական ծրագիրը կատարելու մասին և պլանից ավելի թողարկեց շուրջ 57 միլիոն ռուբլու արտադրանք։ Տասներորդ հնգամյակում, նախորդ հնգամյակի համեմատությամբ, արտադրության ծավալը մեծացավ 67 տոկոսով։*

*Մեզ ուրախացնում են ոչ միայն քանակական, այլև, հատկապես, որակական բարձր ցուցանիշները, որոնց շնորհիվ կոլեկտիվն արժանացել է լայն ճանաչման։ Անցած հնգամյակում արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ պետական որականիշով թողարկվող արտադրանքը հասցվել է 34 տոկոսի, «Ն» ինդեքսովը՝ 62, իսկ նորաձև կոշկեղենինը՝ 34 տոկոսի։ Բարձրորակ կոշկեղեն թողարկելու համար միավորումը տասներորդ հնգամյակում երկու անգամ պարգևատրվել է ՀԱՄԿԽ-ի և ՍՍՀՄ պետական ստանդարտների կոմիտեի դիպլոմով։*

*Համամիութենական սոցիալիստական մրցությունում առավել բարձր արդյունքների հասնելու համար կոլեկտիվը 1975 թվականից սկսած ամեն եռամսյակ արժանացել է ՍՍՀՄ թեթև արդյունաբերության մինիստրության և ճյուղային արհմիության կենտկոմի փոխանցիկ դրոշին։ Մեր մարդկանց առանձնապես ոգևորում է այն իրողությունը, որ տասներորդ հնգամյակի բոլոր տարիներին միավորումը շահել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը, և նրա անունը գրանցվել է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի պատվո տախտակին։*

*Տասներորդ հնգամյակը մեզ համար ևս արտադրության արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացման հնգամյակ էր։ Առաջնորդվելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներով՝ միավորման կուսկոմիտեն և ադմինիստրացիան կազմակերպչական ու տնտեսական ամբողջ աշխատանքն ուղղեցին հենց դրան։ Որակի բարելավման նպատակով գլխավոր ուշադրությունը կենտրոնացրինք այնպիսի հարցերի լուծման վրա, ինչպիսիք են արտադրության մեջ նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրումը, ձեռնարկությունների տեխնիկական վերազինումը, տեխնոլոգիական կարգապահության ամրապնդումը, արտադրանքի տեսականու ընդլայնումը, խնայողության խստագույն ռեժիմի կիրառումը, ձեռնարկությունների համաչափ աշխատանքի ապահովումը, բոլոր օղակներում պետական, աշխատանքային ու կատարողական ամուր կարգապահության հաստատումը, արտադրության կառավարման կատարելագործումը։ Այդ հարցերը պլանավորված ձևով քննարկել ենք սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում և միավորման կուսկոմիտեի նիստերում, ընդունել համապատասխան որոշումներ։*

*Մեր առջև ծառացած խնդիրների լուծման ճանապարհին որակի բարելավմանը վերաբերող շատ հարցեր ենք քննարկել, շատ միջոցառումներ մշակել ու իրականացրել, սակայն դրանց մեջ ամենակարևորը թերևս որակի կառավարման կոմպլեքսային համակարգի արմատավորման նպատակով կատարված աշխատանքն է։ Այս համակարգի ներդրմանը նախորդեց նախապատրաստական մի մեծ շրջան։ Եվ դա հասկանալի է. անհրաժեշտ էր կոլեկտիվների բոլոր անդամներին հանգամանորեն պարզաբանել այդ համակարգի առավելությունը, բացատրել, որ դա նշանակում է վերահսկողության լայն իրականացում՝ սկսած հումքի ընդունումից մինչև արտադրանքի իրացումը, պարզաբանել, թե այդ խնդիրների լուծման գործում ով ինչպիսի անելիքներ ունի։ Կուսկոմիտեի նախաձեռնությամբ ստեղծվեց ժողովրդական հատուկ համալսարան, որը ղեկավարում է միավորման գլխավոր դիրեկտոր Հ. Հարությունյանը։ Համալսարանի պարապմունքներում արծարծվում են նաև արտադրանքի որակի բարելավմանն առնչվող խնդիրները։*

*Կուսկոմիտեն և դիրեկցիան անհրաժեշտ համարեցին բոլոր արտադրամասերում ու ֆաբրիկաներում սահմանել որակի օր՝ արտադրանքի բարձր որակի նկատմամբ լայն վերահսկողություն իրականացնելու նպատակով։ Որակի օրվա խորհրդակցություններում հանգամանորեն քննարկում ենք ստացված յուրաքանչյուր բողոքարկ, պարզում ցածրորակ արտադրանքի թողարկման պատճառները, ուղիներ նշում թերություններն ու թերացումները վերացնելու համար։*

*Թողարկվող արտադրանքի որակի բարձրացումը դարձավ նաև սոցիալիստական մրցության նշանաբանը։ Որակի կառավարման կոմպլեքսային համակարգի արմատավորումը հնարավորություն է ընձեռում փակելու խոտանի ճանապարհը։ Հատուկ քարտում նշվում են բանվորի որակական ցուցանիշները։ Եթե նա խախտում է տեխնոլոգիական այս կամ այն պրոցեսը և այդ պատճառով թողարկում ցածրորակ արտադրանք, ապա զրկվում է հավելյալ վարձատրությունից։*

*Որակի կառավարման համակարգում ըստ ամենայնի կարևորվում է բանվորական նախաձեռնության դերը։ Դեռևս 1976 թ. միավորման գլխամասային ձեռնարկության կարող № 3 արտադրամասում ծնունդ առավ գերազանց որակի համար պայքարող առաջին միջանցիկ բրիգադը, որի փորձը լայն տարածում գտավ ոչ միայն մեր հանրապետության, այլև երկրի կոշիկի ձեռնարկություններում։ Այդ հայրենասիրական նախաձեռնության համար երիտասարդ կոմունիստ Գ. Գաբրիելյանը պարգևատրվել է ՀամԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրով, նրա անունը գրանցվել է կոմերիտմիության տարեգրության պատվո գրքում։ Միավորումում այժմ գործում է 30 այդպիսի բրիգադ։ Դրանք ներառում են տարբեր տեխնոլոգիական պրոցեսներով զբաղված կոլեկտիվներ և գործում են «արտադրվում է գերազանց, վաճառվում է գերազանց» նշանաբանով։ Նրանց աշխատանքները, սկսած կաշվեհումքից մինչև վաճառքի կետը, կապված են իրար հետ և ամեն ինչ արվում է չընդհատվող ցիկլով։ Այդ ընթացքում տեխնոլոգիական բոլոր պրոցեսների նկատմամբ հսկողություն են սահմանում հենց իրենք՝ բրիգադների անդամները։ Այսպես, ձևող բրիգադը հսկում է կաշ-*





digitised by A.R.A.R.@

վեհումքի որակը, նախապատրաստող բրիգադը՝ ձևողների աշխատանքը, կարող բրիգադը՝ վերջինիս, իսկ վաճառողները՝ կարողների աշխատանքը։ Փոխադարձ և հետևողական հսկողությունը մեծապես նպաստում է արտադրանքի որակի բարելավմանը։

Միջանցիկ բրիգադների ակտիվ ու արդյունավետ գործունեությունը վկայում է սոցիալիստական մրցության գործարար բնույթի մասին։ Իսկ երբ մրցությունը կոնկրետ ու գործարար է, ապա զարգանում է մրցակիցների ստեղծագործական ակտիվությունը, ծնունդ են առնում հայրենասիրական նոր նախաձեռնություններ, բոլորն էլ լավ են աշխատում։ Կուսկոմիտեին և սկզբնական կազմակերպություններին առընթեր ստեղծվել ու գործում են սոցիալիստական մրցության արդյունքների ամփոփման շտաբներ։

Մեր կոլեկտիվներում մրցության տոն տվողները կոմունիստներն են, որոնք բոլորն էլ արտադրության առաջավորներ են, թողարկում են բարձրորակ կոշկեղեն, անձնական լավ օրինակ են ծառայում ամենուրեք, հանդես են գալիս լավ նախաձեռնություններով։ Գլխամասային ֆաբրիկայի ձևող արտադրամասի հնագույն բանվորներ, կոմունիստներ Ռիգա Հովհաննիսյանն ու Սիրուշ Կարապետյանը միավորումում առաջինը հրաժարվեցին տեխնիկական վերահսկողության բաժնի ծառայություններից և սկսեցին աշխատել անձնական դրոշմանիշով։ Ներկայումս միավորումում նրանց օրինակին են հետևում շուրջ 300 կարող և ձևող բանվորներ։ Դա աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի և բարձրորակ արտադրանքի համար պայքարի լավ օրինակ է։

Տասներորդ հնգամյակի արդյունքները լավ նախադրյալներ են ընթացիկ հնգամյակի խնդիրները հաջողությամբ լուծելու, ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների որոշումներն անշեղորեն կենսագործելու համար։ ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում թեթև արդյունաբերության աշխատողների, այդ թվում նաև կոշկագործների առջև լուրջ խնդիրներ են դրված։ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ ընկեր Ն. Ա. Տիխոնովի զեկուցման մեջ ուղղակի ասված է. ««Բ» խմբի արտադրանքի արտադրության արագ աճը մեծ կարևորություն ունեցող գործ է։ Կուսակցական ու սովետական մարմինները, մինիստրություններն ու գերատեսչությունները, ձեռնարկությունների ղեկավարները, աշխատավորական կոլեկտիվները պետք է բոլոր ուժերը գործադրեն, որպեսզի ապահովեն բնակչության համար ապրանքների արտադրության ընդլայնումը և էապես բարձրացնեն դրանց որակը։ Այստեղ առանձնապես կարևոր է ցուցաբերել նախաձեռնություն ու հաստատակամություն, ավելի լավ իրացնել բոլոր առկա հնարավորություններն ու ռեզերվները ինչպես թեթև ու սննդի արդյունաբերության ճյուղերում, այնպես էլ ծանր ինդուստրիայի մեջ։ Ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունն ավելացնելու համար հարկավոր է ավելի լավ օգտագործել նաև տեղական ռեսուրսները։ Լավորակ և գեղեցիկ պատրաստված առարկաների թողարկումը, որոնք ուրախություն ու լավ տրամադրություն են բերում մարդկանց, բոլոր նրանց պատվի ու պրոֆեսիոնալ հպարտության գործն է, ովքեր ապրանքներ են արտադրում բնակչության համար»։

Նոր հնգամյակում կուսակցության այդ պահանջները ելակետ կդառնան մեր ամբողջ աշխատանքի համար։ Հնգամյա պլանով նախատեսվում է 1985 թ. մեր հանրապետությունում կոշիկի արտադրությունը հասցնել 17 միլիոն զույգի։ Նշանակում է 1980 թ. համեմատությամբ արտադրության աճը կկազմի մոտ 30 տոկոս։ Դա չափազանց լարված առաջադրանք է, եթե հաշվի առնենք, որ այն հիմնականում պետք է ապահովվի աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

Միավորման կոլեկտիվի առջև ծառացած նոր, այդ թվում որակին առնչվող խնդիրները հաջողությամբ լուծելու համար մշակել և իրականացնում ենք կազմակերպական-տեխնիկական մի շարք միջոցառումներ։ Ֆաբրիկաների վերակառուցումն ու ընդլայնումը հնարավորություն կընձեռեն զգալիորեն բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, ավելացնելու մեքենայացված եղանակով հատուկ նորաձև կոշկեղենի արտադրությունը։ Լուրջ ուշադրություն ենք նվիրում նաև աշխատանքի կազմակերպման առաջավոր ձևերի, մասնավորապես բրիգադային մեթոդի արմատավորմանը։ Այդ մեթոդը հնարավորություն է ընձեռում ոչ միայն բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, այլև բարելավելու կոշկեղենի որակը։ Դրա առավելությունն այն է, որ բրիգադի յուրաքանչյուր անդամ շահագրգռություն է հանդես բերում վերջնական արդյունքի նկատմամբ։

Բազմակողմանիորեն ուսումնասիրելուց հետո այդ հարցը քննարկել ենք կուսկոմիտեում, կոնկրետ ուղիներ ենք նշել աշխատանքի կազմակերպման բրիգադային ձևը լայնորեն արմատավորելու համար։ Այդ մեթոդով միավորումում արդեն գործում է 10 բրիգադ, որոնցում ընդգրկված են 470 բանվորներ։ Նրանք ընթացիկ տարում կարտադրեն ավելի քան 700 հազար զույգ հատուկ նորաձև կոշիկ։ Բրիգադային մեթոդի կիրառմամբ գրեթե իսպառ կրճատվում են բանվորական ժամանակի կորուստները։ 2,5—3 տոկոսով բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը։ Ահա թե ինչու աշխատանքի կազմակերպման այդ առաջավոր եղանակի լայն արմատավորումը մենք համարում ենք նոր հնգամյակում միավորման կոլեկտիվի առջև ծառացած բարդ խնդիրների հաջող լուծման կարևոր պայմաններից մեկը։

ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները քաղաքական ու աշխատանքային նոր խանդավառություն են առաջ բերել միավորման բոլոր ձեռնարկությունների կոլեկտիվներում։

Միավորման կոլեկտիվի սոցիալիստական պարտավորություններում ամենակարևորը արտադրանքի բարձր որակի ապահովման խնդիրն է։ Կոշկագործները պարտավորվել են որակի պետական նշանով թողարկվող արտադրանքի ծավալը, պլանավորված 37,5-ի փոխարեն, հասցնել 40, «Ն» ինդեքսով արտադրանքինը՝ 66,6-ի փոխարեն 70 տոկոսի։ Կոշիկի № 6 ֆաբրիկայի կոլեկտիվը խոստացել է թողարկվող ամբողջ արտադրանքը առևտրական կազմակերպություններին հանձնել որակի պետական նշանով։

Միավորման բոլոր ստորաբաժանումներում հաջողությամբ են կատարվում ինչպես որակին առնչվող, այնպես էլ մյուս պարտավորությունները։ Այդ են վկայում առաջին եռամսյակի արդյունքները. արտադրանքի իրացման եռամսյա պլանը կատարվել է 108,3 տոկոսով, համախառն արտադրանքինը՝ 106,5, օգուտներինը՝ 103,5 տոկոսով։ Ամբողջ արտադրանքի 40,6 տոկոսը թողարկվել է որակի պետական նշանով, իսկ 72,6 տոկոսը՝ «Ն» ինդեքսով։

Մեր գործերը, իրոք, լավ են ընթանում։ Սակայն դա չի նշանակում, թե մեր աշխատանքում թերություններ չկան, թե մեզ մոտ արդեն բոլոր հարցերը լուծվել են։ Ո՛չ, և՛ թերություններ կան, և՛ չլուծված ոչ քիչ հարցեր։ Ամենից շատ մեզ անհանգստացնում են առևտրական կազմակերպություններից ստացվող բողոքարկները։ Մեզնից շատ են դժգոհում հատկապես տարեց մարդիկ, միջակ ու ցածր կրունկներով կոշիկ կրող կանայք։ Մենք գիտենք, որ մեր արտադրած կոշիկների առանձին տեսակներ երբեմն ժամանակից շատ շուտ կորցնում են տեսքը։ Ընդունելով հանդերձ մեղքի մեր բաժինը, նշենք, որ առանց բարձրորակ նյութերի՝ խոսք անգամ չի կարող լինել բարձրորակ արտադրանքի մասին։ Մինչդեռ միշտ չէ, որ մենք լավորակ կաշի ենք ստանում։ Շատ հաճախ ցածրորակ են լինում նաև ստացվող ներկերը, իսկ այդ ամենով, վերջին հաշվով, պայմանավորված է կոշիկների արտաքին տեսքը։ Խանութներում կամ ծանոթների շրջանում հաճախ կարելի է այսպիսի խոսակցություն լսել. ««Մասիսը» հիանալի կոշիկներ է արտադրում, բայց վատն այն է, որ ներբանները շուտ են պոկվում»։ Այո՛, մեր արտադրած որոշ տեսակի կոշիների ներբանները շուտ են պոկվում, որովհետև բարձրորակ սոսինձով չեն կպցվում։

Արտադրանքի որակի բարձրացման համար չափազանց կարևոր նշանակություն ունի նաև բանվորական կազմի կայունացումը։ Սակայն մենք չենք կարողացել հասնել դրան։ Բանվորների հոսունությունը տարեկան կազմում է 5—6 տոկոս։ Դրա պատճառները շատ են, որոնցից երկուսն անպայման պետք է առանձնացվեն։ Նախ՝ արտադրամասերում նորեկների հետ դաստիարակչական





digitised by A.R.A.R.@

անհրաժեշտ աշխատանք չի տարվում, նրանք հոգատարությամբ չեն շրջապատվում։ Դեռ ավելին, երբեմն նրանց անտեղի կոպտում են, վիրավորում, և նորեկը հիասթափված հեռանում է ձեռնարկությունից։ Երկրորդ՝ մենք չենք կարողանում լուծել կոլեկտիվին հուզող շատ հարցեր։ Միավորումը մինչև օրս չունի իր պրոֆիլակտորիումն ու պանսիոնատը, մանկապարտեզները չեն բավարարում եղած պահանջը։ Մեծ է նաև բնակարանային պահանջը. մարդիկ տարիներով բնակարանի հերթի են սպասում ու չեն ապահովվում։ Սրանք կարևոր հարցեր են և շուտափույթ լուծում են պահանջում։ Պատահական չէր, որ ՍՄԿԿ XXVI համագումարը այնքա՜ն մեծ ուշադրություն նվիրեց սոցիալական զարգացման հարցերին։

Նոր հնգամյակի ելակետային տարվա հենց առաջին օրերից Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր կոշիկի «Մասիս» արտադրամիավորման բազմահազարանոց կոլեկտիվը լավ մեկնարկ է վերցրել, իսկ դա գործի հետագա հաջողության կարևոր պայմաններից է։

Մեր կոշկագործները հարվածային աշխատանքով կնշանավորեն ինչպես 1981 թվականը, այնպես էլ ամբողջ հնգամյակը և իրենց համեստ ավանդը կներդնեն ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների կենսագործման համար մղվող համաժողովրդական պայքարում։ Բարձրորակ կոշկեղենի թողարկումը նրանց գլխավոր և պատվավոր խնդիրն է։

---



# ԱԿՏԻՎՈՒԹՅՈՒՆ ԲՈԼՈՐ ՕՂԱԿՆԵՐՈՒՄ

**Վ. Գ. ՊԵՏՐՈՍՅԱՆ**
ժողովրդական դեպուտատների Երևանի քաղսովետի
գործկոմի կազմկոմիսիայի կազմակերպչական բաժնի վարիչ

ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ նշեց այն մեծ դերն ու նշանակությունը, որ ունեն տեղական սովետները մեր կենսագործունեության բոլոր ոլորտներում։ «Ջթուլացնելով ուշադրությունը տեղական տնտեսության, բնակչության սպասարկման հարցերի վրա,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— նրանք ավելի ու ավելի մեծ ավանդ են ներդնում տնտեսական ու սոցիալական զարգացման կոմպլեքսային բնույթի ապահովման մեջ։ Սովետներն ավելի ու ավելի ակտիվորեն են կոորդինացնում իրենց տերիտորիաներում գտնվող ձեռնարկությունների ու կազմակերպությունների աշխատանքը»։ Կուսակցության համագումարի այս գնահատականը բխում է սովետների վերաբերյալ լենինյան դրույթներից. «Սա մի իշխանություն է,— գրել է առաջնորդը սովետների մասին,— որ բաց է բոլորի համար, որ ամեն ինչ անում է մասսայի աչքի առջև, մատչելի է մասսային, ելնում է անմիջականորեն մասսայից, ժողովրդական մասսայի և նրա կամքի ուղղակի և անմիջական օրգանն է» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 12, էջ 383)։

Երկրի ղեկավարման բարդ համակարգում կոմունիստական կուսակցությունը մշտապես հենվում է ժողովրդի կոլեկտիվ կամքի վրա, որի ուղղակի և անմիջական արտահայտիչը սովետներն են, Լենինի բնորոշմամբ՝ դեմոկրատիայի բարձրագույն ձևը։ Սովետների մասին լենինյան դրույթները դրված են նրանց աշխատանքի կազմակերպման սահմանադրական սկզբունքների հիմքում։ Հասուն սոցիալիզմի սահմանադրությունը հստակորեն արձանագրում է. «ՍՍՀՄ-ում ամբողջ իշխանությունը պատկանում է ժողովրդին։

Ժողովուրդը պետական իշխանությունն իրականացնում է ժողովրդական դեպուտատների սովետների միջոցով, որոնք կազմում են ՍՍՀՄ քաղաքական հիմքը։

Մյուս բոլոր պետական մարմինները ենթակա են ժողովրդական դեպուտատների սովետների վերահսկողությանը և հաշվետու են նրանց»։

Լինելով ՍՍՀՄ քաղաքական հիմքը՝ սովետները հանդես են գալիս որպես ժողովրդի ամենաներկայացուցչական կազմակերպություն։ Այդ է վկայում նաև ժողովրդական դեպուտատների Երևանի քաղաքային սովետի կազմը. 500 դեպուտատներից 299-ը բանվորներ են, 252-ը՝ կանայք, 171-ը՝ երիտասարդներ։ Սովետում ընտրված են ժողովրդական տնտեսության բազմաթիվ բնագավառների ներկայացուցիչներ, գիտության, մշակույթի գործիչներ, սովետական բանակի ռազմիկներ, կուսակցական, պետական, տնտեսական աշխատողներ։ Ընտրողները մեծ վստահություն են տածել կոմունիստների նկատմամբ. սովետի կազմում ընտրված է 245 կոմունիստ։

Դեպուտատը սովետի գլխավոր դեմքն է։ ՍՍՀՄ սահմանադրությունը նրան օժտել է մեծ իրավունքներով ու պարտականություններով, ընձեռել լայն հնարավորություններ, որպեսզի ամբողջ պատասխանատվությամբ և լրիվ չափով իրականացնի իր լիազորությունները։



digitised by A.R.A.R.@

Դեպուտատը ոչ միայն մասնակցում է սովետում հարցերի լուծմանը, այլև կազմակերպում է նրա որոշումների կենսագործումը, հսկողություն իրականացնում պետական մարմինների, հիմնարկ-ձեռնարկությունների և կազմակերպությունների աշխատանքի նկատմամբ։

Դեպուտատների մեծ իրավունքներն ու պարտականություններն արտահայտում են Վ. Ի. Լենինի պահանջն այն մասին, որ ժողովրդի ընտրյալները «...իրենք պետք է աշխատեն, իրենք պետք է կատարեն իրենց օրենքները, իրենք պետք է ստուգեն, թե ինչ է ստացվում դրանից կյանքում, իրենք պետք է անմիջականորեն պատասխանատու լինեն իրենց ընտրողների առջև» (Երկեր, հ. 25, էջ 548)։

Դեպուտատների ակտիվությունը զգալիորեն բարձրացել է հատկապես վերջին տարիներին, աճել է նրանց հեղինակությունն ընտրողների շրջանում։ Ահա Երևանի տնաշինական կոմբինատի բետոնագործների բրիգադավար, դեպուտատ Հրանտ Բալդրյանի օրինակը, որը բավական բնորոշ է այդ առումով։ Քաղաքային սովետի նստաշրջանը լսել է նրա հաղորդումը իր գործունեության մասին և բարձր գնահատել այն։ Ի՞նչ պարզեց այդ քննարկումը։ Հ. Բալդրյանն իր գործի հմուտ վարպետ է, աշխատանքում դրսևորում է ակտիվություն ու ձեռներեցություն։ Նրա ղեկավարած բրիգադի բետոնագործները միշտ էլ պատվով են դուրս գալիս սոցիալիստական մրցությունից։ Դեպուտատը արժանի հեղինակություն է վայելում ընտրողների շրջանում։ Նրա ջանքերով ու նախաձեռնությամբ ընտրական օկրուգում կատարվել են մի շարք բարեփոխումներ. բացվել են նոր խանութներ, բարեկարգվել փողոցներ ու բակեր, տեղադրվել ավտոմատ հեռախոսներ և այլն։

Ուշագրավ է, որ դեպուտատներն սկսել են ավելի ակտիվորեն մասնակցել սովետում կատարվող քննարկումներին։ Իրենց ելույթներում նրանք առաջ են քաշում սկզբունքային բազմաթիվ հարցեր։ Անցած նստաշրջաններին զեկուցումներով հանդես են եկել և ելույթ ունեցել 55 դեպուտատ։ Առավել ակտիվություն են դրսևորել «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման ապարատավար Սանասար Պետրոսյանը, Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի բանվոր Հայրիկո Ոսկանյանը, ալյումինի գործարանի բանվոր Պետիկ Նազարեթյանը և շատ ուրիշներ, որոնց առաջարկություններն ու քննադատական դիտողություններն ուսումնասիրում են մշտական հանձնաժողովները, գործկոմի համապատասխան բաժիններն ու վարչությունները։

Մենք մեր գործունեության մեջ կարևոր տեղ ենք հատկացնում նստաշրջաններում դեպուտատների բարձրացրած հարցերի լուծմանը, մշտական հանձնաժողովները հետևում են քննադատական դիտողությունների իրագործմանը և նստաշրջանին հաղորդում արդյունքների մասին։ Այսպես, քաղսովետի առաջին նստաշրջանում ելույթ ունեցավ Երևանի պետական համալսարանի ուսանողուհի, առաջին անգամ դեպուտատ ընտրված Համիկ Մովսիսյանը։ Խոսելով ուսանող երիտասարդությանը հուզող հարցերի մասին՝ նա հատկապես քննադատեց հանրակացարաններում ապրող ուսանողության սպասարկման գործում տեղ գտած թերությունները, որոնք վերաբերում էին հասարակական տրանսպորտի աշխատանքին և սննդի կազմակերպմանը։ Եվ ահա սովետի երիտասարդության գործերի մշտական հանձնաժողովը նստաշրջանից հետո ձեռնամուխ եղավ նրա ելույթում առաջ քաշված հարցերի լուծմանը։ Արդեն երկրորդ նստաշրջանում մշտական հանձնաժողովը հաղորդում տվեց ձեռնարկված միջոցների մասին։ Տեղին է նշել, որ հանրապետության ավտոտրանսպորտի մինիստրությունը պատրաստակամությամբ ընդառաջեց հասարակական տրանսպորտի կազմակերպման վերաբերյալ դեպուտատի առաջադրած հարցի լուծմանը, մինչդեռ նույնը չի կարելի ասել հանրապետության սննդարդյունաբերության մինիստրության «Հայհացարդ» միավորման մասին, որը հետևողականություն չդրսևորեց ուսանողական հանրակացարաններում գործող հասարակական սննդի օբյեկտները թարմ հացով ապահովելու հարցում։

Սովետի 5-րդ նստաշրջանում դեպուտատ Ռ. Ղալումյանը, իր ելույթում քննադատելով քաղաքի հեռախոսային ցանցի աշխատանքում տեղ գտած թերությունները, առաջ քաշեց այն բարելավելու հարցը։ Սովետի սոցիալիստական



օրինականության և հասարակական կարգի պահպանման մշտական հանձնաժողովը, հաշվի առնելով դեպուտատի բարձրացրած հարցի կարևորությունը, ձեռնամուխ եղավ դրա ուսումնասիրմանը։ Արդյունքները, որոնք քննարկվել են հանձնաժողովի հերթական նիստում, ցույց տվեցին, որ խախտվում է հեռախոսների տեղադրման կարգը, արտահերթ հեռախոսներ են տեղադրվում այն քաղաքացիների բնակարաններում, որոնք չեն օգտվում սահմանված արտոնությունից և այլն։ Հանձնաժողովի ուսումնասիրության արդյունքների հիման վրա Երևանի հեռախոսային ցանցի ղեկավարությունն արդեն որոշ միջոցներ է ձեռնարկել այդ գործում անհրաժեշտ կարգ ու կանոն ստեղծելու համար։

ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշման լույսի ներքո Երևան քաղաքի բնակչության շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքի վիճակի և այն բարելավելու միջոցառումների մասին հարցի քննարկման ժամանակ, որը տեղի ունեցավ սովետի երկրորդ նստաշրջանում, բավական սրությամբ դրվեց նաև մայրաքաղաքի մասսայական գրադարանների գործերի վիճակն էապես շտկելու խնդիրը։ Նստաշրջանից հետո կուլտուրայի մշտական հանձնաժողովը ձեռնամուխ եղավ գրադարանների աշխատանքի ուսումնասիրությանը և կուլտուրայի բաժնի հետ միասին արդյունքները ներկայացրեց քաղսովետի գործկոմի քննարկմանը։ Գործկոմը մշակեց միջոցառումներ՝ հանձնաժողովի բարձրացրած հարցերը լուծելու համար։ Քաղսովետի V նստաշրջանում արդեն կուլտուրայի մշտական հանձնաժողովն արդյունքների մասին հանդես եկավ հաղորդումով։

Ժողովրդական դեպուտատների դերը նկատելիորեն մեծացել է տնտեսական, սոցիալ-կուլտուրական շինարարության հարցերի լուծման գործում։ Դեպուտատի ակտիվության ձևերը բազմազան են։ Դրանց մեջ կարևոր տեղ ունեն նաև դեպուտատների հարցապնդումները։ «ՍՍՀՄ-ում ժողովրդական դեպուտատների ստատուսի մասին» օրենքը դեպուտատի հարցապնդումը համարում է «պետական մարմինների և պաշտոնատար անձանց աշխատանքը վերահսկելու գործուն միջոց»։

Վերջին ժամանակաշրջանում քաղաքային սովետի դեպուտատներն ակտիվորեն հանդես են գալիս տարբեր բնույթի հարցապնդումներով, որոնցում արտահայտվում են դեպուտատի անհանգստությունը, հոգատարությունը տնտեսության զարգացման և ամրապնդման, բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման բարելավման նկատմամբ։

Հանդես գալով հարցապնդմամբ՝ ժողովրդի ընտրյալները համոզված են, որ իրենց մտահոգությունն անհետևանք չի մնա, կբերի որոշակի օգուտ։ Ահա թե ինչու հսկողության և քննադատության այս ձևը հաստատուն տեղ է գրավել դեպուտատական գործունեության պրակտիկայում։ Քաղսովետի III նստաշրջանում դեպուտատներ, էլեկտրատեխնիկական գործարանի բանվոր Ջ. Ավագյանը, ավտոմոբիլային գործարանի բրիգադավար Գ. Երեմյանը, «Ֆերիտ» գործարանի բանվորուհի Ս. Գալուկյանը, «Մետշին» գործարանի բանվորուհի Օ. Բաբայանը իրենց հարցապնդման մեջ գրել էին. «Անցյալ ձմռանը քաղաքի մի շարք բնակելի թաղամասերում ջեռուցման ապարեզում եղան խափանումներ։ Խնդրում ենք գործկոմին՝ մեզ տեղեկացնել այս ձմռան սեզոնին բնակելի ֆոնդը նախապատրաստելու և այդ հարցում մեր՝ դեպուտատներիս անելիքների մասին»։

Գործկոմի հանձնարարությամբ նույն նստաշրջանում հարցապնդմանը պատասխանեց գործկոմի նախագահի տեղակալ Պ. Գևորգյանը։ Այդ պատասխանից երևաց, որ իսկապես, գործկոմի համապատասխան ծառայությունները որոշ աշխատանք են կատարել բնակելի ֆոնդը ձմռան սեզոնին նախապատրաստելու համար։ Անցյալ ձմռանը ջեռուցման գործում եղած ընդհատումները կանխելու նպատակով բոլոր կաթսայատներում ստեղծվեցին լրացուցիչ տարողություններ, ուր պահեստավորվեց պահանջվող քանակությամբ վառելանյութ։

Իր հերթին սովետի բնակարանային տնտեսության հանձնաժողովը, հաշվի առնելով դեպուտատների հարցապնդումը, նստաշրջանից հետո ուսումնասիրեց ձմռան սեզոնին քաղաքի բնակելի ֆոնդի նախապատրաստման վիճակը։ Կա-



digitised by A.R.A.R.@

տարված ստուգումները ևս ցույց տվեցին, որ հարցապնդման հեղինակների անհանգստությունը տեղին էր։ Հաշվի առնելով այս ամենը՝ գործկոմի ղեկավարությունը այդ հարցը պահում է իր ուշադրության կենտրոնում։ Դրա համար պատասխանատու օղակների ղեկավարները շաբաթը մեկ գործկոմի ղեկավարությանը, անձամբ նրա նախագահին տեղյակ են պահում ջեռուցման գործում նկատված թերությունները վերացնելու նպատակով ձեռնարկված միջոցների մասին։

Այժմ Երևան քաղաքում գործում է 271 մանկապարտեզ, որտեղ ընդգրկված է 50 հազար երեխա։ Այս տվյալները բավական ցածր են միութենական միջին ցուցանիշից։ Ճիշտ է, մեր քաղաքում յուրաքանչյուր տարի շահագործման են հանձնվում նոր մանկապարտեզներ, սակայն դեռևս ոչ բոլոր ծնողներն են կարողանում իրենց երեխաներին տեղավորել մանկապարտեզում։ Դրա հետևանքով բազմաթիվ կանայք հնարավորություն չեն ունենում մասնակցելու հանրային աշխատանքին։ Հաշվի առնելով ստեղծված վիճակը՝ դեպուտատներ Լ. Ավագյանը և Մ. Կիրակոսյանը վերջերս տեղի ունեցած սովետի նստաշրջանին դիմեցին հետևյալ հարցապնդումով. «Խնդրում ենք մեզ տեղյակ պահել, թե ինչ է արվում մսուր-մանկապարտեզների կառուցման կարևոր գործում քաղաքի խոշոր արդյունաբերական ձեռնարկություններին ներգրավելու ասպարեզում»։

Նույն նստաշրջանում դեպուտատների հարցապնդմանը պատասխանեց գործկոմի նախագահի տեղակալ, դեպուտատ Լ. Բեգլարյանը։ Նշվեց, որ պլանավորված է տասնմեկերորդ հնգամյակում կառուցել 45—50 մանկապարտեզ՝ 12 հազար տեղով։ Միայն 1981 թ. կառուցվելու է 2410 տեղով 9 մանկապարտեզ։ Գործկոմը հատուկ որոշմամբ պարտավորեցրել է նաև քաղաքի մի շարք արդյունաբերական խոշոր ձեռնարկությունների ղեկավարների՝ իրենց կապիտալ ներդրումների հաշվին հնգամյակում լրացուցիչ կառուցել 18 մանկապարտեզ՝ հինգ հազար տեղով։ Շրջսովետների գործկոմներին հանձնարարվել է ապահովել այդ մանկապարտեզների համար հատկացված տարածքների իրացումը, իսկ գործկոմի կապիտալ շինարարության գլխավոր վարչությանը՝ արդյունաբերական ձեռնարկություններին տրամադրել մանկապարտեզների պատրաստի նախագծերի ու նախահաշիվների փաստաթղթերը։

Չենք տարակուսում, որ ինչպես գործկոմի համապատասխան բաժիններն ու վարչությունները, այնպես էլ արդյունաբերական ձեռնարկություններն ակտիվորեն կմասնակցեն մանկապարտեզների շինարարության կարևոր գործին։

Դեպուտատի ակտիվությանը, ընտրողների հետ նրա կապի ամրապնդմանը զգալի չափով նպաստում է ընտրողների հետ հանդիպման միասնական օրվա սահմանումը։ Այդ հանդիպումը տեղի է ունենում յուրաքանչյուր ամսվա երկրորդ երեքշաբթի օրը։ Մեր դեպուտատների մեծ մասը ընտրական օկրուգներում ծավալում է լայն աշխատանք. կազմակերպում ընտրողների ընդունելություն, հետևում նրանց պատվիրանների կատարմանը, լուծում քաղաքացիների բարձրացրած բազմաթիվ հարցեր։

Ամեն անգամ ընտրությունների ժամանակ իշխանության մարմիններում ներգրավվում են մեծ թվով երիտասարդ դեպուտատներ։ Սովետների կազմի նորացումը բերում է թարմ ուժեր, հազարավոր մարդիկ հնարավորություն են ստանում մասնակցելու պետության կառավարմանը։ Իսկ դա նպաստում է պետական իշխանության մարմինների գործունեության արդյունավետության բարձրացմանը։ Բնականաբար, առաջին անգամ ընտրված և հատկապես երիտասարդ դեպուտատների մոտ զգացվում է փորձի պակաս։ Դեպուտատի աշխատանքը դյուրին չէ, այն պահանջում է հսկայական ջանքեր, նախաձեռնություն, որոշակի գիտելիքներ և ունակություններ։

Ահա այս ամենը հաշվի առնելով՝ մենք մեր ուշադրության կենտրոնում ենք պահում առաջին անգամ ընտրված երիտասարդ դեպուտատների հետ տարվող աշխատանքը։ Նպատակը ընտրողների հետ նրանց կապի ամրապնդումն է, իրենց պարտականությունների կատարման ապահովումը։ Քաղաքային սովետի գործունեության կարևոր օղակներից մեկը դեպուտատների ուսուցման կազմակերպումն է։ Գործող օրենքները մեկնաբանելու, դեպուտատնե-



րին սովետի, նրան գործադիր կոմիտեի առջև ծառացած խնդիրներին տեղյակ պահելու նպատակով ամիսը մեկ անգամ մենք հրավիրում ենք սեմինար-պարապմունք։ Երիտասարդ դեպուտատներին օգնություն ցույց տալու գործում անգնահատելի նշանակություն ունի այն դեպուտատների փորձի ուսումնասիրությունը, որոնք քանիցս արժանացել են ընտրողների վստահությանը և ամենայն պատասխանատվությամբ են կատարում իրենց պարտականությունները։ Սեմինար պարապմունքներից մեկում իրենց փորձի մասին պատմեցին քաղսովետի դեպուտատներ, «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման ապարատավար Ռաֆայել Ղալումյանը և լուսատեխնիկական գործարանի բանվորուհի Քաղցրիկ Մկրտչյանը։ Իրենց գործունեության վերաբերյալ հաղորդումներով հանդես եկան նաև առաջին անգամ դեպուտատներ ընտրված կոմպոզիտոր Գեղունի Չթչյանը և Սպանդարյանի շրջսովետի գործկոմի շինվարչության բանվոր Ռաֆայել Նալբանդյանը։ Դեպուտատական աշխատանքի փորձի փոխանակման այս ձևը օգտակար է, և մենք միջոցներ ենք որոնում այն է՛լ ավելի կատարելագործելու համար։

Դեպուտատների ակտիվության բարձրացման գործում մեծ դեր են խաղում մշտական հանձնաժողովները։ Նրանցում ներգրավված ժողովրդական յուրաքանչյուր դեպուտատ լիովին հնարավորություն ունի դրսևորելու իր ունակություններն ու գիտելիքները։ Իսկ դրան, անշուշտ, քիչ չի նպաստում նաև հանձնաժողովների անդամների միջև հանձնարարությունների մտածված բաշխումը։ Այս տեսակետից կարելի է հատկապես նշել սովետի առողջապահության և սոցիալական ապահովության մշտական հանձնաժողովի (նախագահ՝ № 17 պոլիկլինիկայի գլխավոր բժիշկ Ժասմին Սագինյան), շինարարության և շինանյութերի արդյունաբերության (նախագահ՝ արդյունաբերական շինարարության մինիստրի տեղակալ Ռոբերտ Մելիքյան), երիտասարդության գործերի (նախագահ՝ պոլիտեխնիկական ինստիտուտի կուսկոմիտեի քարտուղար Հենրիկ Գարոյան), սոցիալիստական օրինականության և հասարակական կարգի պահպանության (նախագահ՝ ՀԿԿ Երևանի քաղկոմի կուսակցական հանձնաժողովի նախագահ Հայրապետ Տատուրյան), կոմունալ տնտեսության (նախագահ՝ «Հայոսկի» միավորման գլխավոր դիրեկտոր Սաբիր Ստեփանյան), կուլտուրայի (նախագահ՝ Ալ. Մյասնիկյանի անվան գրադարանի դիրեկտոր Արագի Թիրաբյան), բնակարանային տնտեսության (նախագահ՝ «Երևանշին» արտադրական միավորման կուսկոմիտեի քարտուղար Է. Թադևոսյան) մշտական հանձնաժողովների լավ աշխատանքը։

Ի՞նչ հարցերի վրա են իրենց ուշադրությունը կենտրոնացրել մշտական հանձնաժողովները։ 1980 թ. մարտին առաջին նստաշրջանում քննարկվեց քաղսովետի գործկոմի 1979 թ. գործունեության մասին հաշվետվությունը։ Ինչպես զեկուցողը՝ գործկոմի նախագահ Մ. Մուրադյանը, այնպես էլ ելույթ ունեցողները նշեցին այն խնդիրները, որոնք պետք է լուծվեն առաջիկա տարիներին։ Ելնելով այդ խնդիրներից՝ յուրաքանչյուր մշտական հանձնաժողով կազմել է իր աշխատանքային պլանը։ Երևան քաղաքում գործող արդյունաբերական ձեռնարկություններում աշխատում են տասնյակ հազարավոր կանայք։ Ի՞նչ է արվում նրանց առողջությունը պահպանելու, աշխատանքի պայմանները թեթևացնելու համար։ Այս հարցն ուսումնասիրել է առողջապահության և սոցիալական ապահովության մշտական հանձնաժողովը։ Քաղաքի բազմաթիվ ձեռնարկություններում ստեղծվել են սանիտարակենցաղային հարմարություններ, հիգիենիկ սենյակներ, բարելավվել է սննդի և հանգստի կազմակերպումը, վերացվել գիշերային հերթափոխը։ Սակայն ստուգումներից պարզվեց նաև, որ քիչ չեն այն ձեռնարկությունները, որտեղ հետևողականորեն չեն զբաղվում կանանց առողջության պահպանման, նրանց աշխատանքի, հանգստի, սանիտարակենցաղային պայմանների բարելավման հարցերով։ Նման կարգի թերություններ կան դեկորատիվ գործվածքեղենի, ծխախոտի ֆաբրիկաներում, պոլիգրաֆիական, ձեթ-օճառ կոմբինատներում, «Ցերիտ», համակցված կերի գործարաններում։ Մշտական հանձնաժողովի առաջարկություններն արդեն քննարկվել են գործկոմի նիստում և մշակվել միջոցառումներ արդյունաբերական



digitised by A.R.A.R.@

ձեռնարկություններում կանանց աշխատանքային պայմանները բարելավելու համար։

Հյուրանոցը յուրաքանչյուր քաղաքի դեմքը բնորոշող օբյեկտներից է։ Մեր մայրաքաղաքում վերջին տարիներին կառուցվել ու շահագործման են հանձնվել նոր հյուրանոցներ, ուր սպասարկման գործը վատ հիմքերի վրա չէ։ Բայց կան նաև այնպիսի հյուրանոցներ, որտեղ ցածր է սպասարկման կուլտուրան։ Դրանց աշխատանքը բազմակողմանիորեն ուսումնասիրեց կոմունալ տնտեսության մշտական հանձնաժողովը։ Արդյունքները քննարկվեցին գործկոմի նիստում, ընդունվեց գործնական որոշում՝ համապատասխան ժամկետներով ու հանձնարարականներով։ Գործկոմի կոմունալ ձեռնարկությունների վարչությունը, որի ենթակայության տակ են այդ հյուրանոցները, ինչպես նաև պլանային հանձնաժողովը և ֆինբաժինը ձեռնամուխ են եղել այդ որոշման կենսագործմանը։

Ինչպե՞ս է ընթանում կարևոր կառույցների շինարարությունը, ինչ դժվարություններ կան այդ գործում, ինչպիսի՞ օգնություն է պետք կազմակերպել։ Այս հարցերը գտնվում են շինարարության և շինանյութերի արդյունաբերության մշտական հանձնաժողովի ուշադրության կենտրոնում։ Հանձնաժողովն ուսումնասիրել ու քննարկել է մետրոպոլիտենի շինարարության ընթացքը, մասսայական բնակարանային շինարարության համար ճանապարհների և ինժեներական կոմունիկացիաների կառուցման վիճակը և այլ հարցեր։

Մշտական հանձնաժողովները, գործկոմի բաժիններն ու վարչությունները իրենց ամենօրյա աշխատանքում սերտորեն համագործակցում են միմյանց հետ։ Նրանք համատեղ ուսումնասիրում են իրավիճակը այս կամ այն օբյեկտում կամ կազմակերպությունում, օգնում միմյանց՝ շտկելու թերացումները, վերացնելու թերությունները։ Աշխատանքի կազմակերպման այդ ձևը լավ արդյունք է տալիս, և գործադիր կոմիտեն ձգտում է ավելի կատարելագործել և արդյունավետ դարձնել այդ համագործակցությունը։

ՍՍՀՄ սահմանադրության և ժողովրդական դեպուտատների ստատուսի մասին օրենքի համաձայն, 1980 թվականի նոյեմբեր—դեկտեմբերին ժողովրդի ընտրյալներն իրենց գործունեության և իշխանության տվյալ մարմնի աշխատանքի մասին հաշիվ տվեցին ընտրողներին, ինչպես նաև իրենց դեպուտատ առաջադրած կոլեկտիվներին։ Հաշվետվության նման կարգը ընտրողներին հնարավորություն է ընձեռում՝ մշտապես տեղյակ լինելու դեպուտատի աշխատանքին, նրան իրազեկ պահելու իրենց մտահոգող հարցերին։ Անցյալ տարի նման հաշվետվություններով հանդես է եկել 459 դեպուտատ։

Սովետների, նրանց դեպուտատների ու մշտական հանձնաժողովների վրա մեծ պատասխանատվություն է ընկնում կուսակցության XXVI համագումարի և Հայաստանի կոմկուսի XXVII համագումարի որոշումների կենսագործման առնչությամբ։

1981 թ. մարտին քաղաքային սովետի V նստաշրջանը հանգամանորեն քննարկեց «Ժողովրդական դեպուտատների Երևանի քաղաքային սովետի գործադիր կոմիտեի 1980 թ. հաշվետվությունը և ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների կենսագործումն ապահովելու ասպարեզում մայրաքաղաքի տեղական սովետների խնդիրների մասին» հարցը։ Նստաշրջանի հանձնարարությամբ այժմ գործկոմը մշակում է ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների կենսագործումն ապահովելու միջոցառումների 1981—1983 թթ. հեռանկարային պլանը։

Խոսելով ժողովրդական դեպուտատների սովետների նոր դերի մասին՝ ՍՄԿԿ XXVI համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց, որ դեպուտատները պետք է իրենց հեղինակությունն ու փորձը «օգտագործեն այն բանի համար, որ սովետի յուրաքանչյուր նստաշրջան, մշտական հանձնաժողովի յուրաքանչյուր նիստ վերածվեն մարդկանց իսկական խորհրդի, առավել ճիշտ լուծումների կոլեկտիվ որոնման»։ Համառոտ ու խտացված այս խոսքերում արտացոլված են ժողովրդի ընտրյալների խնդիրները, ընդհանուր շարքում նրանց ունեցած դերը։ Ժողովրդական դեպուտատների Երևանի քաղաքային սովետը, նրա գործադիր կոմիտեն, մշտական հանձնաժողովները, դեպուտատները լի են կուսակցության պահանջները մինչև վերջ կենսագործելու վճռականությամբ։

---

# ԲԱՐՁՐՈՐԱԿ ԿԱԴՐԵՐ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆԸ

**Մ. Ա. ԳՅՈՒԼԽԱՍՅԱՆ**
Հայկական գյուղատնտեսական
ինստիտուտի ռեկտոր, պրոֆեսոր

Կուսակցության պարենային ծրագրի իրականացման գործում մեծ է գյուղատնտեսության մասնագետի՝ որպես հողագործության գլխավոր տեխնոլոգի, դերը։ Ինտենսիվ հողագործության պայմաններում անկարելի է պատկերացնել որևէ կոլտնտեսության կամ պետտնտեսության գործունեությունն առանց գյուղատնտեսության մասնագիտական ծառայության, առանց այդ բնագավառի մասնագետների բեղմնավոր աշխատանքի։

Մեր հանրապետությունում բարձր որակավորում ունեցող գյուղատնտեսական կադրերի պատրաստման կարևոր կենտրոն է Հայկական գյուղատնտեսական ինստիտուտը։ Իր գոյության տարիներին ինստիտուտը պատրաստել է ավելի քան 14 հազար մասնագետ, այդ թվում՝ 7 հազար գյուղատնտես, 5 հազար ինժեներ-մեխանիկ և հիդրոմելիորատոր, բազմաքանակ տնտեսագետներ, հաշվապահներ, ինժեներ-տեխնոլոգներ։ Ներկայումս կոլտնտեսություններում, պետտնտեսություններում, գյուղտնտեխնիկայի պետական կոմիտեի սիստեմում, գիտահետազոտական ինստիտուտներում և գյուղատնտեսական այլ կազմակերպություններում աշխատում են ավելի քան 7800 շրջանավարտներ, որոնցից շատերը ճանաչման են արժանացել ո՛չ միայն մեր հանրապետությունում, այլև նրա սահմաններից դուրս։ Նրանցից 16-ը սոցիալիստական աշխատանքի հերոս են, 430-ը՝ կոլտնտեսությունների և պետտնտեսությունների ղեկավարներ, 4-ը՝ միութենական և հանրապետական գիտությունների ակադեմիաների անդամներ, 37-ը՝ գիտությունների դոկտորներ և պրոֆեսորներ։

Բարձրորակ մասնագետների պատրաստման և գյուղատնտեսական գիտության զարգացման ասպարեզում ունեցած ծառայությունների համար ինստիտուտն արժանացել է կառավարական բարձր պարգևի՝ «Պատվո նշան» շքանշանի։

Այժմ ինստիտուտի հինգ ֆակուլտետներում սովորում են շուրջ 4000 ուսանողներ։ Ամեն տարի ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղեր են գործուղվում 14 մասնագիտությունների ավելի քան 650 շրջանավարտներ։

Ղեկավարվելով գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ, ինստիտուտում զգալի աշխատանք է կատարվել ուսանող-երիտասարդության գաղափարաքաղաքական դաստիարակության, նրան հայրենասիրության և ժողովուրդների բարեկամության ոգով դաստիարակելու նպատակով։ Ռեկտորատը և կուսակցական կոմիտեն ուսուցման բոլոր տարիներին ուսանողության շրջանում համակողմանի գաղափարական-դաստիարակչական աշխատանքներ են իրականացնում, դրա շնորհիվ զգալիորեն բարձրացել է ուսման առաջադիմությունը, աճել գերազանց ու լավ գնահատականներով սովորող ուսանողների թիվը, ամրապնդվել է կարգապահությունը, պակասել են հակահասարակական երևույթները։

Սկսած 1966 թվականից, ինստիտուտը դարձել է նաև գյուղատնտեսական արտադրության ղեկավար կադրերի ու մասնագետների որակավորման բարձ-



digitised by A.R.A.R.@

րացման կենտրոն։ Անցած տարիներին ինչպես մեր, այնպես էլ հարևան հան-
րապետություններից մեզ մոտ իրենց որակավորումն են բարձրացրել մոտ 5
հազար մարդ։
Մասնագետների պատրաստումն արդյունավետ կերպով զուգակցվում է տե-
սական ու պրակտիկ կարևոր նշանակություն ունեցող գիտական պրոբլեմների
մշակման հետ։ Վերջին երկու տասնամյակում ինստիտուտում մշակվել և ժո-
ղովրդական տնտեսության տարբեր ճյուղերում ներդրվել են տասնյակ արժե-
քավոր հանձնարարականներ։ Այսպես, մեզ մոտ ստացված «կրոտիլին» հեր-
բիցիդը միութենական ճանաչում է գտել և երկար տարիներ օգտագործվել է
գյուղատնտեսության մեջ, տարեկան տալով 25—30 միլիոն ռուբլու տնտեսա-
կան օգուտ։ Մեր գիտնականները ստացել և հանրապետության տարբեր գոտի-
ներում շրջանացրել են հացահատիկային, բանջարաբոստանային և պտղատու
կուլտուրաների 15 նոր արժեքավոր սորտեր։
Գյուղատնտեսական և ջրային պրոբլեմների գիտահետազոտական ինստի-
տուտների համատեղ ուսումնասիրությունների հիման վրա հանրապետության
տարբեր գոտիների համար սահմանված են գյուղատնտեսական կուլտուրաների
ոռոգման ռեժիմներ, որոնք լայնորեն կիրառվում են արտադրության մեջ։
Միութենական և միջազգային ճանաչում են ստացել մեր գիտնականների
աշխատանքները հանրապետությունում տարածված վայրի հացաբույսերի
ուսումնասիրության բնագավառում։ Դրանք ունեն ինչպես տեսական, այնպես
էլ գործնական նշանակություն։ Կարևոր աշխատանքներ են կատարվել գյուղա-
տնտեսության մեքենայացման ասպարեզում։ Ինստիտուտում նախագծված
ԿՈՒՄՍ—100 քարհավաք մեքենան երկար տարիներ հաջողությամբ օգտա-
գործվում է գյուղտեխպետկոմի մելիորատիվ ջոկատներում։
Գիտահետազոտական աշխատանքների հետագա ընդլայնմանը մեծապես
նպաստեցին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի
«Գյուղատնտեսական գիտության արդյունավետության հետագա բարձրացման
և արտադրության հետ նրա կապի ամրապնդման միջոցառումների մասին» և
«Բարձրագույն ուսումնական հաստատություններում գիտահետազոտական աշ-
խատանքի արդյունավետության բարձրացման մասին» որոշումները։ Դրա վկա-
յությունն են այն հաջողությունները, որ ձեռք են բերել մեր գիտնականները
տասներորդ հնգամյակում։ Նրանք պետական սորտափորձարկման են հանձնել
հասկավոր հացաբույսերի 4 և խաղողի 18 նոր արժեքավոր սորտեր, որոնցից
մեկը՝ խաղողի «Հաղթանակ» սորտը, արդեն շրջանացվել է հանրապետությու-
նում։ ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրությունն ընդունել և արտադրության
համար հանձնարարել է երկու նոր հերբիցիդ՝ ֆենազոնը և մետազինը։ Դրանցից
վերջինը, որը նախատեսվում է կարտոֆիլի, բամբակենու և հատիկաընդեղեն
բույսերի ցանքատարածությունների մոլախոտերի ոչնչացման համար, հաջո-
ղությամբ փոխարինում է արտասահմանից ներմուծվող «պրոմեթրինին»։ Նոր
հերբիցիդի ստացման տեխնոլոգիան պատենտավորվել է Շվեյցարիայում։
«Ֆենազոն» հերբիցիդի արտադրությունն արդեն սկսվել է Ուֆա քաղաքում։
Խաղողի մեր նոր սորտերն աչքի են ընկնում բարձր որակով և բերքատվու-
թյամբ, 2—3 անգամ գերազանցում են շրջանացված սորտերին ու լայն մաս-
շտաբներով ներդրվում են արտադրության մեջ։ Խաղողի այս սորտերից մի քա-
նիսի առավելությունները հատկապես լավ դրսևորվեցին 1980 թվականին.
դրանք քիչ տուժեցին ուշ գարնան ցրտահարությունից և բավական բարձր բերք
տվեցին։ Այդ սորտերը, պետական փորձարկմանը զուգընթաց, արագորեն բազ-
մացվում և ներդրվում են արտադրության մեջ։ Այդ նպատակով ինստիտուտի
«Ոսկեհատ» ուսումնափորձնական տնտեսությունում կառուցվել է ջերմոցային
համալիր, որը հնարավորություն է ընձեռում տարեկան արտադրելու շուրջ 800
հազար արմատակալ։ Նոր սորտերի տարածությունն արդեն հասցվել է մոտ 1000
հեկտարի։ Տասնմեկերորդ հնգամյակը կլինի այս սորտերի զանգվածային ներ-
դրման հնգամյակ։
Միայն վերջին 5 տարում մեր գիտնականները ստացել են 33 հեղինակային
վկայագրեր։ ՍՍՀՄ գյուտերի և հայտնագործությունների գործերի պետական
կոմիտեի որոշմամբ 3 գյուտեր ներկայացվել են պատենտավորման արտասահ-



մանյան երկրներում։ Այդ բնագավառում ձեռք բերած հաջողությունների հա-
մար ընթացիկ տարում ինստիտուտն արժանացավ ՍՍՀՄ գյուղատնտեսության
մինիստրության երրորդ մրցանակի։
Գիտահետազոտական աշխատանքների արդյունքներն ավելի արագ ներ-
դնելու նպատակով մենք որոնում և գործադրում ենք գիտության ու արտադրու-
թյան կապի առավել արդյունավետ ձևեր։ Դրանցից են տնտեսական պայմա-
նագրային կարգով կոլտնտեսությունների և պետտնտեսությունների համար
կատարվող գիտահետազոտական աշխատանքները։ Տնտեսությունների պատ-
վերով և նրանց ֆինանսավորած գիտական թեմաները մշտապես կատարվում
են ժամանակին և արդյունքներն ավելի հեշտ են ներդրվում արտադրության մեջ։
Տնտեսական-պայմանագրային կարգով տարվող աշխատանքների ծավալը
ներկայումս անցնում է տարեկան 250 հազար ռուբլուց։ Վերջին տարիներին
ինստիտուտի գիտնականներն ավելի մոտիկից են սկսել զբաղվել արտադրու-
թյան հարցերով, որի շնորհիվ գյուղատնտեսության աշխատողներն ավելի շատ
են դիմում նրանց օգնությանը։ Խաղողագործության ամբիոնի և նրան առընթեր
խաղողի սելեկցիայի գիտահետազոտական լաբորատորիայի աշխատակիցները,
պրոֆեսոր Պ. Այվազյանի ղեկավարությամբ, սիստեմատիկաբար լինում են
էջմիածնի ու Արարատի շրջանների տնտեսություններում և օգնություն են ցույց
տալիս խաղողի բերքատվության բարձրացման հարցերում։
Ինստիտուտի ամբիոններում և լաբորատորիաներում տարվող հետազո-
տություններին ակտիվ մասնակցություն են ունենում ուսանողները։ Մասնա-
գիտական կրթություն ստանալուն զուգընթաց նրանք ծանոթանում են փորձ-
նական գործի մեթոդիկային, իրենց ուսումնասիրությունների արդյունքներով
հանդես են գալիս ուսանողական գիտական կոնֆերանսներում, մասնակցում են
հանրապետական ու միութենական մրցույթներին, հոդվածներ հրապարակում
ինստիտուտի գիտական ժողովածուներում։ Այս ամենը նպաստում է այնպիսի
կադրերի պատրաստմանը, որոնք արտադրության մեջ ունակ են լուծելու ինչ-
պես մասնագիտական ու կազմակերպչական, այնպես էլ հետազոտական բնույ-
թի հարցեր։
Նոր հնգամյակի հիմնական ուղղություններում խնդիր է դրված արմատա-
պես բարելավել երիտասարդ մասնագետների պատրաստումն ու ժողովրդական
տնտեսության մեջ նրանց օգտագործումը։ Խնդրի լուծումն առնչվում է մի շարք
այլ հարցերի հետ։ Հայտնի է, որ ուսանողը չի կարող բարձրորակ մասնագետ
դառնալ, եթե նա ակադեմիական ուսուցմանը զուգընթաց արտադրական լուրջ
պրակտիկա չի անցնում։ Որպես կանոն, ուսանողների արտադրական պրակտի-
կան անցկացվում է առաջավոր կոլեկտիվ ու պետական տնտեսություններում և
այլ ձեռնարկություններում։ Սակայն, իրականում, աշխատանքային տեղերի
բացակայության պատճառով արտադրական պրակտիկայի ընթացքում ուսա-
նողները շատ դեպքերում հանդես են գալիս դիտողի դերում և անմիջական մաս-
նակցություն չեն ունենում արտադրական պրոցեսին։ Արդյունաբերական ձեռ-
նարկություններում ուսանողներին ավելի շատ օգտագործում են որպես սոսկ
բանվորական ուժ, և պրակտիկայի ամբողջ ժամանակաշրջանում նրանք ծանո-
թանում են միայն այն արտադրամասերի ու արտադրապրոցեսների հետ, որտեղ
աշխատում են։ Այսպիսի պայմաններում արտադրական ուսուցում անցած շըր-
ջանավարտը որոշակի դժվարությունների է հանդիպում իր պրակտիկ գործու-
նեության ընթացքում։
Որն է ելքը։ Մեր կարծիքով, բազային տնտեսություններին պետք է հատ-
կացնել անհրաժեշտ միջոցներ ու հաստիքներ՝ արտադրական պրակտիկա անց-
նող ուսանողներին որպես մասնագետներ ձևակերպելու համար։ Դա կբարձրաց-
նի նրանց պատասխանատվությունը գործի նկատմամբ և պայմաններ կստեղծի
պրակտիկ գիտելիքների պակասը լրացնելու համար։ Դրա համար չեն պահանջ-
վում ֆինանսական մեծ հատկացումներ։ Մեր հաշվարկներով, երկամսյա ար-
տադրական պրակտիկայի ծախսերը չեն գերազանցի տարեկան 60—70 հազար
ռուբլուց, մանավանդ որ այդ ծախսերը կբաժանվեն այն վեց մինիստրություն-
ների միջև, որոնց համար ինստիտուտը կադրեր է պատրաստում։ Արտադրա-
կան ուսուցման այսպիսի կազմակերպումն անհրաժեշտ է դառնում հատկապես





digitised by A.R.A.R.@

ցություն պետք է ունենան ճյուղային մինիստրությունները։ Հանրապետության գյուղատնտեսության մինիստրությունը վերջին հինգ տարում իր միջոցներով ինստիտուտի՝ որակավորման բարձրացման ֆակուլտետի համար կառուցել է հյուրանոցատիպ հանրակացարան, մեզ է տրամադրել «Նաիրի 2—3» էլեկտրոնային հաշվիչ մեքենա, կառուցում է տրակտորիստների և կոմբայնավարների գործնական պարապմունքների երթահրապարակ, միջոցներ է հատկացրել մեծ ծավալի լաբորատոր սարքավորումներ ձեռք բերելու համար և այլն։ Անհրաժեշտ է, որ մյուս գերատեսչությունները ևս, որոնց համար ինստիտուտը կադրեր է պատրաստում (ջրային տնտեսության, սննդարդյունաբերության, պտուղբանջարային տնտեսության, ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրություններ, Հայգյուղտեխպետկոմ) օգնեն ինստիտուտի նյութատեխնիկական բազայի ամրապնդման հարցերում։

Ինչպես հայտնի է, արդի գյուղատնտեսությունը չի կարելի պատկերացնել առանց էլեկտրիֆիկացման ու ավտոմատացման։ Արտադրապրոցեսներում առավել լայն մասշտաբներով են օգտագործվում էլեկտրական մեքենաներ ու սարքավորումներ։ Այդ իսկ պատճառով առաջնահերթ խնդիր է դառնում ինժեներ-էլեկտրիկների պատրաստումը։ Մեր հանրապետությունը խիստ կարիք ունի նաև անասնապահական համալիրների մեքենայացման հարցերով զբաղվող ինժեներների, փակ գրունտի ագրոնոմ-բանջարաբույծների, հողաշինարարների, ագրոքիմիկոս-հողագետների, անտառ-մելիորատորների և այլն։ Վերջին երկու մասնագիտություններով ինստիտուտը նախկինում կադրեր պատրաստել է, սակայն չհիմնավորված պատճառներով այդ բաժինները փակվել են։ Այժմ հանրապետությունում ստեղծվել է ագրոքիմիական մեծ ծառայություն, որն առավել հրատապ է դարձնում ագրոքիմիայի մասնագետների պատրաստումը։

Նոր մասնագիտություններով կադրերի պատրաստման հարցը լուրջ ուսումնասիրման կարիք է զգում։ Հապաղել չի կարելի, որովհետև եթե նույնիսկ մեկ տարի հետո կազմակերպվի ընդունելություն, ապա շրջանավարտները արտադրություն կմեկնեն միայն տասներկուերորդ հնգամյակում։ Մեզ մոտ առկա են բոլոր հնարավորությունները նշված մասնագիտություններով բարձրորակ կադրեր պատրաստելու համար, միայն մնում է, որ շահագրգռվածություն ցուցաբերեն պլանավորող մարմինները և այն մինիստրությունները, որոնց անհրաժեշտ են այդ մասնագետները։

Մեծ են ինստիտուտի հեռանկարները նոր հնգամյակում։ ՍՄԿԿ XXVI համագումարի պահանջներից ելնելով, մշակվել են կոնկրետ միջոցառումներ ժողովրդական տնտեսության ու գիտության ժամանակակից պահանջներին համապատասխան մասնագետներ պատրաստելու համար։ Լուրջ ուշադրություն է նվիրվում ուսումնական պրոցեսի կատարելագործման, ուսուցման առաջավոր ձևերի ու մեթոդների ներդրման, դասախոսների գիտական մակարդակի և մանկավարժական վարպետության բարձրացման, ամբիոններում և գիտահետազոտական լաբորատորիաներում տարվող հետազոտական աշխատանքների արդյունավետության բարձրացման վրա։ Կբարելավվեն ուսանողության և կոլեկտիվի անդամների աշխատանքային ու կենցաղային պայմանները։ Ինստիտուտի կոլեկտիվը կձեռնարկի անհրաժեշտ բոլոր միջոցները ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած խնդիրները հաջողությամբ կատարելու համար։

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՂԻ ԴԻՄԱԳԻԾԸ

**Ա. Բ. ԱՎԱՆԵՍՅԱՆ**
Տնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԱՐԴԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ հասարակական արտադրության մասշտաբների հսկայածավալ աճը, գիտատեխնիկական առաջընթացը, տնտեսական կապերի բարդացումը, սոցիալիստական արտադրահարաբերությունների կատարելագործումն ավելի ու ավելի բարձր պահանջներ են առաջադրում արտադրության կառավարման բոլոր մակարդակների ղեկավարներին։ Այս առնչությամբ տնտեսական քաղաքականության վերաբերյալ կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ընդունած վերջին շրջանի որոշումներում, ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերում առանձնապես շեշտվում են կառավարման հետագա բարելավման ու կատարելագործման հարցերը։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXVI համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշեց. «Մեր առջև ծառացած պրոբլեմների լուծումը, մեր ունեցած հնարավորությունների օգտագործումը մեծապես պայմանավորված են ժողովրդական տնտեսության ղեկավարման մակարդակով, պլանավորման ու կառավարման մակարդակով»։

Սոցիալիստական արտադրության կառավարողների գործելակերպի, հոգեբանական կերպարի ուսումնասիրությունը վերջին շրջանում դարձել է ո՛չ միայն կառավարման կազմակերպմամբ զբաղվող մասնագետների հետազոտության առաջնահերթ պրոբլեմներից մեկը, այլև արտադրության կազմակերպման տարբեր օղակների սոցիալ-տնտեսական զարգացման պլանների կազմման կարևոր բաժիններից է։ Այն բազմակողմանիորեն արծարծվում է տնտեսագետների, փիլիսոփաների, իրավաբանների, սոցիոլոգների ու հոգեբանների հետազոտություններում։

Սոցիալիստական հասարակարգում աշխատավորները հանդես են գալիս որպես իրավահավասար անձինք, որտեղ կառավարման ֆունկցիաների իրականացումը ոչ թե առանձին անհատների մենաշնորհն է, այլ աշխատանքի որոշակի բաժանման արդյունք։

Անդրադառնալով սոցիալիստական արտադրահարաբերությունների պայմաններում աշխատանքի կազմակերպման և կոոպերացիայի հարցերին, Ֆ. Էնգելսը նշել է, որ արդյունաբերության և արտադրության բոլոր ճյուղերի կառավարման գործն ընդհանրապես կվերցվի իրար հետ մրցակցող անհատների ձեռքից։ Դրա փոխարեն արտադրության բոլոր ճյուղերը կգտնվեն ողջ հասարակության ղեկավարման ներքո, այսինքն կվարվեն՝ ելնելով հասարակության շահերից, ըստ հասարակական պլանի և հասարակության բոլոր անդամների մասնակցությամբ։ Այսպիսով, այդ նոր հասարակարգը կվերացնի կոնկուրենցիան և նրա տեղը կդնի ասոցիացիան (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 33, стр. 343)։

Հետևաբար, սոցիալիստական արտադրության կառավարողին բնութագրե-



digitised by A.R.A.R.@

լիս պետք է առաջին հերթին նկատի առնել ոչ թե նրա բնատուր ունակությունները ու հատկանիշները, այլ տվյալ գործունեության բնույթին ներկայացվող պահանջները։ Սոցիալիստական արտադրահարաբերությունների պայմաններում օբյեկտիվ անհրաժեշտություն է կառավարող սուբյեկտի կուսակցականությունը, հասարակական, պետական ու կոլեկտիվ շահերը զուգակցելու նրա կարողությունը։ Սոցիալիստական արտադրության տարբեր օղակների կառավարման գլխավոր ֆունկցիաների՝ պլանավորման, կազմակերպման, կոորդինացման, ղեկավարման և վերահսկողության իրականացումը պահանջում է, որպեսզի կառավարող սուբյեկտը օժտված լինի ինչպես տնտեսագիտական-տեխնոլոգիական, այնպես էլ սոցիալ-հոգեբանական գիտելիքներով։ Սակայն կառավարվող օբյեկտին առավել արդյունավետ գործունեության նպատակամղելու համար միայն գիտելիքները բավարար չեն։ Մարքսի խոսքերով ասած, «...Իդեաների իրականացման համար պահանջվում են այնպիսի մարդիկ, որոնք պետք է պրակտիկ ուժ գործադրեն» (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 2, стр. 132)։ Այդ «պրակտիկ ուժը գործադրելու» համար ղեկավարը պետք է կարողանա կոլեկտիվին իր շուրջը համախմբել և առավել նպատակահարմար օգտագործել նրա յուրաքանչյուր անդամի պոտենցիալ հնարավորությունները։ Գիտելիքների և ունակությունների համալիրը ենթադրում է սոցիալական կազմակերպությունների գծային կառավարում։ Ինչ վերաբերում է ֆունկցիոնալ ծառայությունների՝ տեխնիկական, տնտեսագիտական կադրերին, ապա նրանց գործունեության մեջ գերադասությունը տրվում է կոնկրետ մասնագիտական ու գործնական գիտելիքներին։ Իհարկե, նման ղեկավարները ևս պետք է ունենան «զուտ կառավարչական» գիտելիքներ և հմտություն, բայց, օրինակ, պլանային բաժնի պետը առաջին հերթին պետք է լավ տիրապետի տնտեսական գործունեության վերլուծության և պլանավորման մեթոդներին, գլխավոր էներգետիկը՝ ուժային սարքավորումների գործողության հիմունքներին և այլն։

Մեր երկրում կառավարող կադրերի մասնագիտական պատրաստականության նկատմամբ արտահայտված պահանջների բավարարումն այժմ բավականին դյուրին է։ Այժմ ժողովրդական տնտեսության տարբեր ոլորտներում ըզբաղված են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող մոտ 28 մլն աշխատողներ։

Մեր ուսումնասիրությունները վկայում են, որ ՀՍՍՀ-ում գծային կառավարման համակարգում ձեռնարկությունների և մասնաճյուղերի դիրեկտորների ու արտադրամասերի պետերի շուրջ 88 տոկոսը էլեկտրամեքենաշինությունում և 83 տոկոսը թեթև արդյունաբերության մեջ ունեն բարձրագույն կամ միջնակարգ մասնագիտական կրթություն։ Ֆունկցիոնալ ծառայությունների ղեկավար աշխատողների մոտ վերոհիշյալ տվյալները փոքր ինչ ցածր են, համապատասխանաբար՝ 81 և 82 տոկոս։

Սակայն այդ ընդհանուր տվյալները ցույց չեն տալիս, թե որքանով է գիտելիքների կազմը համապատասխանում զբաղեցրած պաշտոնին։ Ըստ մեր ուսումնասիրությունների, 1968—1978 թթ. ընդգրկված գծային կառավարման 227 ղեկավար աշխատողներից բազային կրթությամբ մասնագիտության բնագավառում աշխատում էին ընդամենը 61,2 տոկոսը։

Պարզվում է, որ արդյունաբերության մեջ շատ դեպքերում գծային կառավարման պաշտոնները զբաղեցնում են բազային կրթությամբ մանկավարժներ, պատմաբաններ, մաթեմատիկոսներ, աշխարհագրագետներ, մարզիչներ, անասնաբույժներ, անասնաբույծներ, նկարիչներ և այլն, և այլն։

Ավելի հաճախ զբաղվածությունը արդյունաբերության կոնկրետ ճյուղում շեղվում է բազային կրթության մասնագիտությունից։ Այսպես, մեքենաշինության ճյուղային մասնագետ ինժեներ-տեխնոլոգը կամ ինժեներ-տնտեսագետը ղեկավար պաշտոն է զբաղեցնում թեթև, սննդի և այլ ճյուղերի գծային կամ ֆունկցիոնալ կառավարման ապարատում։

Մեր ուսումնասիրած օբյեկտներում այս հայտանիշով դասակարգելու դեպքում զբաղեցրած պաշտոնը բազային կամ հարակից կրթությամբ ստացած



մասնագիտությանը համընկնում է՝ գծային կառավարման աշխատողների 49 տոկոսի, ֆունկցիոնալ ծառայությունների ղեկավարների ընդամենը 32 տոկոսի մոտ։

Կառավարողի իմացության շրջանակն ընդգրկում է ո՛չ միայն տարբեր բնագավառների գիտելիքներ, այլև, առաջին հերթին, կառավարվող տվյալ օբյեկտի առանձնահատկությունների իրազեկություն։ Պետք է տարբերել ընդհանրապես ինտելեկտի, յուրաքանչյուր անհատի ընդհանուր զարգացման, գրագիտության մակարդակը գործնական գիտելիքների այն շրջանակից, որոնք անհրաժեշտ են կառավարման տվյալ կոնկրետ ֆունկցիաները կատարելու համար։

Կառավարման պրակտիկայում կիրառվող, այսպես կոչված, գործնական գիտելիքները բազմազան և բազմերանգ են։ Վերջին հաշվով դրանց կարելի է դասակարգել ըստ տեխնիկական և տեխնոլոգիական, տնտեսագիտական, սոցիալ-քաղաքական, իրավական, հոգեբանական, կիբեռնետիկական բնագավառների։ Ղեկավարի լավատեղյակության աստիճանն ըստ այս բնագավառների պետք է առավելագույն չափով համապատասխանի նրա իրավասությանը։ Բանն այն է, որ կառավարման առօրյայում այդ բնագավառներին վերաբերող հարցերը լուծվում են իրավասության սկզբունքով։ Ընդ որում, առօրյա գործունեության ընթացքում առաջին պլանի վրա են ոչ թե տեսական գիտելիքները, այլ կոնկրետ իրավիճակի սթափ իմացությունից բխող գործելակերպն ու որոշումը։

«Պետական հիմնարկության ղեկավարը պետք է վերին աստիճանի ընդունակ լինի իր կողմը գրավելու մարդկանց և ունենա գիտական ու տեխնիկական բավականաչափ սոլիդ գիտելիքներ նրանց աշխատանքը ստուգելու համար» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 36, էջ 695)։ Լենինը գտնում էր, որ կառավարման գիտությունը ո՛չ միայն գիտելիքների մեխանիկական գումար է, այլև դրանց հիման վրա գործունեության նպատակասլաց ծրագրավորում, հիմնավորված վճիռների կայացում, դրանց իրականացման համար կոլեկտիվի համախմբում և նպատակամղում։ Այդպիսին է կառավարողի բնատուր ունակությունը, որը ձևավորվում է ոչ թե բազային կրթության, այլ պրակտիկ աշխատանքի ընթացքում։

Այստեղ մենք գործ ունենք մի բարդ և հակասական երևույթի հետ, որը բնորոշ է ո՛չ միայն կառավարման պրոցեսին, այլև ընդհանրապես հասարակական կյանքին՝ վճիռների հիմնավորումն անհամեմատ ավելի հեշտ է, քան դրանց կենսագործումը։ Այն հարցին, թե ժամանակի ո՞ր մասն է օգտագործվում տնտեսական ու սոցիալական բնույթի որոշումների ընդունման և որ մասը՝ դրանք կատարողներին հասցնելու և կատարման հսկողության վրա և ինչպես են գնահատվում կառավարման այդ երկու գործողությունների բարդությունը, հարցման ենթարկված գծային կառավարման աշխատողների ճնշող մեծամասնությունը պատասխանել է, որ ժամանակի երեք քառորդից ավելին ծախսում են երկրորդ օպերացիայի վրա և գտնում են, որ դրա իրականացումն անհամեմատ ավելի բարդ է։ Այնինչ իրականում պետք է հակառակը լիներ։ Եթե ընդունված որոշումները և վճիռները գիտականորեն հիմնավորված են (իսկ դրա համար շատ ժամանակ և ջանքեր են պահանջվում), և հասարակական, կոլեկտիվ ու անձնական շահերը ճիշտ են զուգակցվում (որը պարտադիր է), ապա կառավարվող օբյեկտը՝ աշխատավորական կոլեկտիվը և նրա առանձին անդամները, պետք է նպատակամղվեն դրանց կատարմանը։

Արտադրության կառավարման ցանկացած բնագավառում ընդունած յուրաքանչյուր վճիռ, վերջին հաշվով, շոշափում է սոցիալական հարցեր։ Գործնականից զատ, առկա են նաև միջանձնական հարաբերություններ, որոնց բնույթը պայմանավորվում է նաև կառավարողի սոցիալ-հոգեբանական դիմագծով, բնավորությամբ, հեղինակությամբ, աշխատանքի ոճով և այլն։ Բարոյական դրական հատկանիշները, ասենք, մարդասիրությունը, մեղմությունը, անկեղծությունը, անմիջականությունը, ղեկավարի մոտ դրսևորվում են զբաղեցրած պաշտոնի պրիզմայով։Ստանձնելով որևէ պաշտոն, անձնավորությունն սկսում է կատարել դրան համապատասխան դեր, ի հայտ բերելով կոնկ-



digitised by A.R.A.R.@

րետ իրավիճակից բխող հատկանիշներ։ Կառավարման տեսության մեջ դա կոչվում է «որոշակի դերին համաձայնեցված բնավորություն»։ Շատ հաճախ անձնավորության բնավորության առանձին գծեր կարող են մնալ ներթաքուն վիճակում մինչև նրան որոշակի իրավունքներով օժտելը։ Նման երևույթը բազմակողմանիորեն արծարծվել է ո՛չ միայն սոցիոլոգիական և հոգեբանական հետազոտություններում, այլև գեղարվեստական գրականության մեջ և ֆոլկլորում։ «Պաշտոն տուր, հետո փորձիր». շատ գեղեցիկ և դիպուկ բնութագրում է հայկական առածը։

Լինում են դեպքեր, երբ համեստ, բարյացակամ, մեղմաբարո շարքային աշխատողը ղեկավար աշխատանքի անցնելուց հետո մեծամտանում է, դառնում ինքնահավան և դադարում հաշվի առնել հասարակական կարծիքը։

Բնավորության առանձին հատկանիշներ որոշ պարագաներում կարող են և մերժելի լինել, սակայն կառավարման ոլորտում (ղեկավարի խստությունը, կամքը հարկադրելու միտումը և այլն), դրական դեր են խաղում։

Ընդհանուր առմամբ, անձնավորության խառնվածքի միարժեք բնորոշումը դյուրին չէ։ Անձնավորության վարքագծի, արարքների դրսևորումը պայմանավորվում է կոնկրետ իրադրությամբ, հանգամանքների հարաբերակցությամբ։

Հետևաբար, ղեկավար աշխատողի բնավորության գծերի գնահատումը բարդ սոցիալ-հոգեբանական պրոբլեմ է, քանի որ այստեղ նշված դժվարություններին գումարվում են այնպիսի գործոններ, ինչպիսիք են՝ գնահատողների սուբյեկտիվ մոտեցումը, իրավիճակի պայմանների բազմազանությունը և այլն։ Ջանասեր աշխատողը ղեկավարի պահանջկոտությունը հավուր պատշաճի է ընդունում, իսկ անբանը այն որակում է որպես դաժանություն։ Մեր ուսումնասիրությունների ժամանակ տրված այն հարցումին, թե ղեկավարը արդարամի՞տ է, պատասխանների 93 տոկոսը եղել է դրական, 2,7 տոկոսը՝ բացասական և մոտ 4 տոկոսը չի պատասխանել։

Չմոռանանք, որ նույն ղեկավարը տարբեր իրավիճակներում կարող է դրսևորել մի դեպքում՝ հաստատակամություն, մյուս դեպքում՝ համակերպվելու և մեղմության միտումներ։ Բոլորովին այլ բան է՝ հարբեցողն ու անբանն են խոտան արտադրանք տվել, թե անձնական վշտից ընդարմացած մայրը։ Մի խոսքով, ինչպես ամեն մի անհատի, այնպես և ղեկավարի բնավորության գծերի միարժեքային գնահատումը միշտ էլ հղի է անարդարացիության վտանգով։

Այնուհանդերձ, կան որոշակի հատկանիշներ, որոնք ղեկավարը պետք է մշտապես դաստիարակի իր մեջ։ «Ժամանակակից ղեկավարը,— նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— պետք է իր մեջ կուսակցականությունը օրգանապես զուգորդի խոր բանիմացության հետ, կարգապահությունը՝ նախաձեռնության հետ և գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցման հետ։ Միաժամանակ, ղեկավարը պարտավոր է ցանկացած տեղամասում հաշվի առնել նաև սոցիալ-քաղաքական, դաստիարակչական կողմերը, զգայուն լինի մարդկանց նկատմամբ, նրանց կարիքների ու պահանջմունքների նկատմամբ, օրինակ ծառայի աշխատանքում և կենցաղում» (Լենինյան կուրսով, հ. 5, էջ 701—702)։

Արտադրության ղեկավարի կերպարը բնորոշող կարևոր հայտանիշներից է կառավարման նրա ոճը, որը սոցիոլոգների կարծիքով համապատասխան է կամ ածանցվում է նրա բնավորությունից, բայց միաժամանակ գործունեության ընթացքում մշակվում է շրջապատի, իրավիճակի և բազմաթիվ այլ գործոնների ազդեցության ներքո։ Այստեղ ևս մենք գործ ունենք ոչ թե ստերեոտիպերի, այլ մեծ բազմերանգության հետ. յուրաքանչյուր ղեկավար ունի աշխատանքի իր ոճը, որը տարիների ընթացքում մշակվում ու հղկվում է փորձի, փորձությունների ու սխալների յուրօրինակ ընկալման պայմաններում։

Սոցիալիստական արտադրության մեջ դեռևս կարելի է հանդիպել ղեկավարների, որոնց գործելակերպում տեղ են գտել ավտոկրատիզմի տարրերը, հրամանների ու հրահանգների տարրի խիստ պահպանումը, ենթակաների մոտ ամեն կարգի նախաձեռնության սահմանափակումը, տեղի-անտեղի սեփական կամքի հարկադրումը, յուրաքանչյուր, թեկուզև չնչին սխալի համար պատ-



ժիչ սանկցիաների կիրառումը և այլն։ Այդպիսիներին դիպուկ կերպով նշավակել է Լ. Ի. Բրեժնևը. «Լինում է նաև այնպես, որ այս կամ այն ղեկավար աշխատողը հանկարծ սկսում է երևակայել, թե իր համար բացված են կյանքի բոլոր գաղտնիքները, թե ինքը ամեն ինչ գիտե։ Եվ ահա նա սկսում է ցուցումներ տալ բոլոր հարցերի վերաբերյալ, բոլորին հրամայել, փոխանակ հմտորեն օգտագործելու մյուսների փորձն ու գիտելիքները» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 415)։

Սոցիալիստական արտադրության ղեկավարի համար բնորոշ կարող է լինել կառավարման միայն դեմոկրատական ոճը, որի տեսությունը մշակել է Վ. Ի. Լենինը։ Լենինը նշում էր, որ ի հակադրություն կապիտալիզմի, սոցիալիստական հասարակարգը կառավարման գիտական կազմակերպման համար ստեղծում է իրոք դեմոկրատական հիմքեր. աշխատավորական զանգվածների լայն մասնակցությունը հասարակական արտադրության կառավարմանը, նրանց նախաձեռնության, ինքնագործունեության ու ստեղծագործական ակտիվության ծավալումը։

Արտադրության կառավարման դեմոկրատական ոճը նախ և առաջ բնութագրվում է այն բանով, թե ղեկավարը որքանով է ուշադիր կոլեկտիվի կարծիքի նկատմամբ, ինչ չափով է խրախուսում նախաձեռնությունն ու ստեղծագործական մթնոլորտը, կարողանում իր շուրջը համախմբել և նպատակամղել աշխատավորներին։

Իսկական դեմոկրատիզմը չի հանդուրժում հակահասարակական երևույթները, որովհետև դրանք սուր ծայրով ուղղված են առաջին հերթին հենց աշխատավորների շահերի դեմ, հետևաբար, այդպիսի դեպքերում թե՛ դատախազի և թե դատավորի դերում առաջին հերթին պետք է հանդես գա աշխատավորական կոլեկտիվը։

Արտադրության կառավարման աստիճանական համակարգում ղեկավարի աշխատանքի ոճի ընդօրինակումը ներքին ստորաբաժանումներում բավականին ցայտուն է դրսևորվում։ Ընդ որում, ավտոկրատիզմի տարրերը վտանգավոր են այնքանով, որ խիստ վարակիչ են։ Եթե ղեկավարը տարվում է վարչարարությամբ, նրա շուրջը ստեղծվում է «ուժեղ դեմքի» կեղծ լուսապսակ։ Սակայն անվերապահորեն չի կարելի պնդել, թե ավտոկրատությունը դրսևորվում է միայն ավելորդ խստապահանջության, որոշ դեպքերում էլ կոպիտ վերաբերմունքի ձևով։ Այն առավելապես պայմանավորված է անձի բնավորությամբ, քան կուլտուրայով։

Կառավարման մասնագետները և սոցիոլոգները մշակել են մի շարք հանձնարարականներ ղեկավար աշխատողների վարքագծի, կուլտուրայի կանոնների վերաբերյալ։ Իհարկե, այստեղ ևս պատրաստի դեղատոմսեր չկան, բայց դրանց իմանալը, հիշելը միայն օգտակար է, անհրաժեշտ։

Կառավարման աստիճանական համակարգում կարգադրությունները և հանձնարարությունները պետք է հնարավորին չափ տրվեն անմիջական ենթակային, պահպանելով օղակների իրավասությունը։ Դա անհրաժեշտ է ոչ միայն ներքին ստորաբաժանումների ղեկավարներին չանտեսելու առումով։ Եթե կատարողները հանձնարարություններն ստանան ինչպես իրենց անմիջական ղեկավարներից, այնպես էլ աստիճանական համակարգի վերադասներից, կարող են ծագել թյուրիմացություններ, բախումներ և այլն։ Էթիկայի կանոնների առավել խախտում է, եթե վերադասը միջանկյալ օղակի ղեկավարի կարգադրությունը փոխում է՝ առանց նրան իրազեկ պահելու։

Տարբեր հարցերով (աշխատանքային թե անձնական) ստորադրյալները պետք է վերադասին դիմեն՝ հնարավորին չափ պահելով աստիճանականության սկզբունքը, նախապես տեղյակ պահելով իրենց անմիջական ղեկավարին։ Ըստ որում, հարցի լուծումը միշտ էլ ցանկալի է նախապես համաձայնեցնել վերջինիս հետ։ Դա առավելապես կարևոր է բախումնային իրավիճակում, որի դեպքում վերադասը պետք է ունկնդրի բանավիճող երկու կողմերին։

Սուբորդինացիայի պահպանման կարևոր պայմաններից է խորհրդակցություններում, ժողովներում և ընդհանրապես ասուլիսի ժամանակ ձայն տալու



digitised by A.R.A.R.@

հերթականությունը։ Հաճախ պատահում է այնպես, որ էթիկայից ելնելով խոսքը տրվում է ըստ հասակի, հեղինակության կամ այլ հատկանիշների (գիտական կոչման, որակավորման և այլն)։ Նման պրակտիկան հղի է այն վտանգով, որ ավագ ընկերների կամ փորձված մասնագետների ելույթից հետո կրտսեր կոլեգաները, եթե նույնիսկ հակառակ կարծիքի են, կարող են չարտահայտվել կամ առանց երկար բարակ մտածելու իրենց տեսակետը արագ «վերանայել»։ Դա առավել չափով վերաբերվում է այն դեպքերին, երբ պաշտոնատար անձը, առանց ենթականերին լսելու, նախապես հայտնում է իր կարծիքը։ Ճիշտն այն է, երբ կառավարողը, իրեն վերապահելով վերջնական վճռի ընդունման իրավունքը, հանգամանորեն ծանոթանում է ենթակաների կարծիքներին, սկըսելով կրտսեր աշխատակիցներից։

Այսպիսով, միջանձնական հարաբերություններում կառավարողը չպետք է ընդունի ամենագիտունի կեցվածք։ Հասարակ տրամաբանությանը չի դիմանում երբեմնի այն մտայնությունը, թե իբր հիվանդանոցի գլխավոր բժիշկը անվերապահորեն ավելի գիտակ է, քան բաժանմունքների շարքային բժիշկները, ձեռնարկության դիրեկտորը տեխնիկայի ու արտադրության, պլանավորման ու հաշվապահության հարցերում ավելի գիտակ է, քան շարքային ինժեները, տնտեսագետը կամ հաշվապահը։ Ուստի, հանձնարարականները նախապես պետք է մշակեն համապատասխան ստորաբաժանումների մասնագետները։

Ինչպես նշվեց, ղեկավարը կոլեկտիվում առանձնահատուկ դիրք է գրավում, ու նրա վարվելակերպը նեղ անձնական գործ չէ և պետք է համապատասխանի նրա զբաղեցրած դիրքին ու դերին։ Կառավարման պրակտիկայում մշակվում են վարվելաձևի որոշակի կանոններ։ Այսպես, անհրաժեշտ է համբերատար լսել դիմացինի կարծիքը, եթե նույնիսկ նա սխալ է, հնարավորություն տալ լիովին արտահայտելու սեփական տեսակետը, փաստարկումները։ Քննադատել ոչ թե անձը, այլ կատարված սխալները, երևույթը։ Բոլորովին այլ բան է ասել. «տվյալ հարցում դուք ճիշտ չեք կողմնորոշվում» և «դուք ճիշտ կողմնորոշվել չեք կարող»։ Խուսափել աշխատանքային բանավեճը անձնականի վերածելուց։ Պահպանել էմոցիոնալ չեզոքության սկզբունքը։ Հիշել «Յուպիտեր, դու բարկանում ես, ուրեմն դու ճիշտ չես» ասացվածքը և բարկացած պահին վճիռներ չարձակել։ Խուսափել կանխակալ կարծիքներից։ Մարդկանց մասին դատել ըստ նրանց աշխատանքի արդյունքի և ոչ թե ըստ լսածի, անձնական համակրանքի կամ հակակրանքի։ Հնարավորին չափ խուսափել բախումնային վիճակների ստեղծումից։ Հիշել, որ ստորադրյալի հետ մեկ անգամ բախվելուց հետո, այն իներցիայով կարող է խորանալ։ Ուստի, պետք է լինել արտակարգ զգույշ և սկզբունքային դիրքերից ջանալ բախումը հարթել։ Ստորադրյալների հետ ընկերություն անելիս պահպանել որոշակի սահմաններ։ Ընկերությունը, բարեկամությունը որևէ ենթակայի հետ կարող է պարտավորեցնող լինել ի վնաս կոլեկտիվի։ Կատարված սխալների ու թերացումների համար վերադասի առջև առավելագույն պատասխանատվությունը ղեկավարը պետք է վերցնի իր վրա։ Առավել ևս խուսափել այն ենթակաների վրա բարդելուց։ Կառավարման ոլորտին չվերաբերվող զրույցների ժամանակ ամեն կերպ խուսափել սեփական կարծիքը ենթակաների պարանոցին փաթաթելուց։ Հիշել, որ ոչ մի նվաստացուցիչ բան չկա ղեկավարի համար, եթե օրինակ, արվեստի, գրականության կամ սպորտի մասին եղած խոսակցություններում ենթական ցույց տա իր գերազանցությունը։ Ենթակաների հետ հաղորդակցվելու լեզուն պետք է լինի հնարավորին չափ անպաճույճ, հասկանալի։ Առավել ևս անթույլատրելի է տարբեր լեզուների խառնուրդի կամ ժարգոնային դարձվածքների օգտագործումը։

Արտադրության կառավարողի կերպարի բնորոշ հատկանիշներից է աշխատանքային կոլեկտիվում նրա վաստակած հեղինակությունը։ Առհասարակ հասարակության բոլոր սոցիալական բջիջներում (այդ թվում և ընտանիքում) ղեկավարումը անվերապահորեն ենթադրում է կառավարող սուբյեկտի շեշտված հեղինակություն։ Բնականաբար, ղեկավար կադրերի ընտրության ժամանակ հատկապես հարկ է նկատի ունենալ, որ համապատասխան պաշտոններում նշանակվեն տվյալ կոլեկտիվում առավել բարձր հեղինակություն վայելող անձինք։



Ուսումնասիրությունները վկայում են, որ կառավարողի հեղինակության վրա բացասական ազդեցություն կարող են թողնել հատկապես հետևյալ հանգամանքները. համակեցության կանոնների խախտումը, հարբեցողությունը, անբարոյականությունը, շորթումը և այլն։ Որոշ առումով դա վերաբերում է նաև նրա ընտանիքի անդամներին։

Որպես կանոն, բարձր պատրաստականությամբ և հմտությամբ օժտված ղեկավարն իրեն շրջապատում է բանիմաց աշխատակիցներով։ Ղեկավար աշխատողի հեղինակությունը կարող է խիստ վտանգվել, եթե նա աշխատակիցների նկատմամբ ցուցաբերում է սուբյեկտիվ, կանխակալ մոտեցում։

Կ. Մարքսը կառավարողին ներկայացվող պահանջները համեմատել է դիրիժորի հետ։ Նվագախմբի կատարումն առանձին երաժիշտների նվագի մեխանիկական միասնությունը չէ։ Որքան էլ վիրտուոզ լինեն նրանք՝ առանձին վերցրած, եթե ներդաշնակ չգործեն, ոչինչ չի ստացվի։ Դիրիժորի պարտականությունն է հետևել ո՛չ միայն յուրաքանչյուրի նվագին առանձին-առանձին, այլև ամբողջ նվագախմբի կատարողական արվեստին։

Հիրավի, ղեկավարն իր խառնվածքով պետք է ներդաշնակություն հաստատի աշխատանքային կոլեկտիվի հետ, դարձնի նրան միաբան ու միախոհ, նըպաստի նրանցից յուրաքանչյուրի ու ողջ կոլեկտիվի համակողմանի վերընթացին։

Ինչպես ՍՄԿԿ XXVI համագումարում նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, խոսքը աշխատանքի այնպիսի ոճ մշակելու մասին է, որի մեջ կատարողականությունը, կարգապահությունը օրգանապես զուգակցվեն համարձակ նախաձեռնության և ձեռներեցության հետ, գործիմացությունն ու գործարարությունը՝ մեծ նպատակների ձգտումի հետ, թերությունների նկատմամբ քննադատական վերաբերմունքը՝ մեր ընտրած ուղու պատմական առավելությունների նկատմամբ անսասան վստահության հետ։

digitised by A.R.A.R.@

# ՈՉ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՈԼՈՐՏԻ ՃՅՈՒՂԵՐԻ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ԱՌԹԻՎ

**Ռ. Հ. ՇԱԽԿՈՒԼՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ

ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ արդի պայմաններում ընդլայնվում են ինչպես ժողովրդական տնտեսության նորմալ աշխատանքի, այնպես էլ սովետական մարդկանց հարաճուն պահանջմունքների բավարարման համար անհրաժեշտ ներդրումների չափերը։

Մեր երկրի արտադրաուժերի հետագա զարգացմանը զուգընթաց խորանում է ոչ միայն արտադրության մասնագիտացումը, այլև առավել բազմաճյուղ է դառնում ժողովրդական տնտեսությունը։ Այդպիսի պայմաններում ուժեղանում է ինչպես նյութական, այնպես էլ ոչ նյութական արտադրության ճյուղերի կարգավորման և կառավարման հստակության և դրանց փոխադարձ կապի կատարելագործման պահանջը, որի հետևանքով մեծանում է գիտատեխնիկական առաջընթացի նվաճումներն արդյունավետ օգտագործելու անհրաժեշտությունը։ Նյութական արտադրության սահմաններն ու ծավալը հետզհետե ընդլայնվում են և ստեղծվում այնպիսի պայմաններ, երբ ոչ արտադրական ոլորտը, աճի տեմպերով, առաջ է անցնում արտադրական ոլորտից։ Դա հասարակության արտադրաուժերի զարգացման որոշակի փուլի օրինաչափություններից է, երբ ոչ արտադրական ոլորտը դառնում է ժողովրդական տնտեսության կոմպլեքսի վճռական լծակ։ Այստեղ տարեցտարի մեծանում է երկրի աշխատանքային ու նյութական ռեսուրսների բաժինը, որի ազդեցությունը հասարակության զարգացման ընթացքի վրա աստիճանաբար մեծանում է։ Ոչ արտադրական ոլորտի ներկայիս բնորոշումը բխում է այն բանից, որ այստեղ չեն արտադրվում նյութական արժեքներ։ Այդուհանդերձ, այժմ այդ ոլորտը արտադրում է ոչ նյութական բնույթի զգալի չափով բարիքներ, որոնց նշանակալի մասը արտադրության ուղեկցող գործոն է։

Հասարակական գործունեության բաժանումը արտադրական և ոչ արտադրական ոլորտների այժմ, մեթոդաբանական առումով, վերանայման կարիք ունի։ Զարգացման մեքենայական ժամանակաշրջանից առաջ ու հետագայում նյութական արտադրության ոլորտը գրեթե բացառում էր ինֆրաստրուկտուրայի ներգործությունը դրա զարգացման վրա։ Արդ, երբ ծավալվում է գիտատեխնիկական հեղափոխությունը և մարդկությունը հնարավորություն ունի բանականորեն ավելի շատ ներգործելու նյութական արտադրության վրա, ոչ նյութական արտադրության ոլորտի ճյուղերը ավելի են ընդլայնում իրեղեն արժեքների արտադրության վրա ուղղակի ներգործության սահմանները։ Ընդ որում, նյութական արտադրության ինֆրաստրուկտուրան ավելի ու ավելի է դառնում արտադրողական աշխատանքի գործադրման ոլորտ, քանի որ ոչ նյութական արտադրության ճյուղերում նույնպես արդեն արտադրվում են նյութականացված արժեքներ։ Հետևաբար, նյութական և ոչ նյութական արժեքների արտադրությունն արդի պայմաններում արագ փոխում է իր բովանդակությունը։ Նյութական և ոչ նյութական բարիքների արտադրության ծավալի համադրումն ամբողջ հասարակության մասշտաբով դառնում է ընդհանրացնող, ինտեգրալ և պլանային ցուցանիշ։ Բացի այդ, հասարակական գործունեության երկու ոլորտներում ծախսված հանրօգուտ աշխատանքի հարաբերակցությունն ու ծավալը նույնպես դառնում են ոչ նյութական արտադրության ոլորտի պլանավորման ընդհանրացնող ցուցանիշ։ Այնուհետև, որ ավելի կարևոր է, ոչ նյութական արտադրության ճյուղերը դասակարգելիս անհրաժեշտ է փուլ առ փուլ առաջ քաշել ճյուղերի շղթայի այն օղակը (գիտական սպասարկում, կրթություն, կենցաղի ծառայություն, կոմունալ-բնակարանային տնտեսություն, կառավարում և այլն), որն առավել լրիվ է արտացոլում նյութական արտադրության ոլորտում ունեցած ներգործության ծավալը։ Դա հնարավորություն կընձեռի կոնկրետ մշակելու ճյուղի պլանավորման ընդհանուր և յուրահատուկ ցուցանիշները, այն հաշվով, որ դրանք կոմպլեքսայնորեն փոխգործողության մեջ լինեն ինչպես ոչ նյութական, այնպես էլ նյութական արտադրության պլանավորման ընդհանուր համակարգի հետ։

Մինչև վերջին ժամանակներս տնտեսագիտական գրականության մեջ, ինչպես և պրակտիկայում չէր շոշափվում այնպիսի ցուցանիշների համակարգ մշակելու հարցը, որոնք բնութագրեն ոչ նյութական արտադրության ճյուղերում հարաճուն ծավալներով ոչ նյութական արդյունքի ստեղծումը։ Այդպիսի համակարգի մշակումը տնտեսագիտության ու պրակտիկայի հրատապ խնդիրն է։ Ոչ նյութական արտադրության առանձին ճյուղերի ցուցանիշների համակարգի ստեղծումը հնարավորություն կընձեռի ճիշտ ու ռացիոնալ կերպով հաշվի առնելու հասարակական աշխատանքի ծախսումները, ինչպես նաև ուժեղացնելու այդ ճյուղերի շահութաբերության աճի պրոցեսը և կարգավորելու դրանց օղակների կառավարումը։

Գիտատեխնիկական հեղափոխությունը և այդ հիման վրա աշխատանքի հասարակական բաժանման հետագա խորացումը հանգեցնում են այն բանին, որ ոչ նյութական արտադրության ճյուղերի նոր ֆունկցիաներն առանձնանում և դառնում են ժողովրդական տնտեսության ինքնուրույն ճյուղեր, որոնք անմիջականորեն առնչվում են մարդու և բնության միջև նյութերի փոխանակության պրոցեսի հետ, ինչպես նաև շաղկապված են զանազան սպառողական արժեքների արտադրության հետ։ Այս տեսակետից ոչ նյութական արտադրության մեջ հատկապես առանձնանում է գիտության և գիտական սպասարկման ճյուղերի, նախագծային-կոնստրուկտորական հիմնարկությունների գործունեությունը, որը փաստորեն արտադրողական աշխատանք է և դարձել է արտադրության ամբողջ պրոցեսի անբաժանելի մասը։

Ինչպես արդեն նշվեց, ոչ արտադրական ոլորտում ավելի մեծ նշանակություն է ստանում տնտեսական արդյունքի ցուցանիշը։ Մասնավորապես դա վերաբերում է գիտության և դրա սպասարկման ճյուղերին։ Եթե գիտությունն այժմ դարձել է արտադրաուժ, ապա աշխատանքն այդ ոլորտում չի կարելի դիտել որպես ոչ արտադրողական աշխատանք, և հասկանալի է, որ գիտության, գիտական հետազոտության և գիտության սպասարկման վրա ծախսված յուրաքանչյուր ռուբլու դիմաց հասարակությունը պետք է փոխհատուցում ստանա։ Այն կարող է արտահայտվել ինչպես նյութականացված, այնպես էլ առհասարակ տնտեսական արդյունքի մեջ։

Ոչ արտադրական ոլորտի ճյուղերում, որտեղ որպես գործունեության վերջնական գնահատական առաջադրվում են արժեքային բնորոշումները, ավելի ճիշտ կլինի, եթե պլանավորման ցուցանիշների համակարգը ներառնի նորմատիվային կամ վերջնական արդյունքի գների մակարդակը, հաշվի առնելով գործող հիմնական արտադրական ֆոնդերի վրա կատարվող ծախսումները։ Այդպիսի վերջնական ցուցանիշներ արդեն անհրաժեշտ է կիրառել ոչ միայն բնակչության կենցաղային սպասարկման ոլորտում, որտեղ կատարվում են արտադրական և ոչ արտադրական բնույթի ծառայություններ, այլև ուղևորատար տրանսպորտում, կապում, նույնիսկ գիտության մեջ։ Սակայն ինչի՞ հիման վրա մշակել գիտության և գիտական սպասարկման բնագավառի պլանավորման ցուցանիշները։





digitised by A.R.A.R.@

Մինչև այժմ ոչ արտադրական ոլորտի այդ ճյուղը գնահատվում էր լոկ սոցիալական կամ սոցիալ-տնտեսական առումով։ Երկրի տնտեսական և սոցիալական զարգացման պետական պլանները մշակելիս արդյունաբերական այն փորձնական ձեռնարկությունները (գործարանները, ֆաբրիկաները), որոնք շուկայի համար արտադրանք չեն թողարկում, դասվում են «գիտություն և գիտական սպասարկում» ճյուղում։ Իսկ եթե ինքնուրույն հաշվեկշիռ ունեցող այդ ձեռնարկություններն արդյունաբերական արտադրանք են թողարկում շուկայի համար, դրանք հաշվի են առնվում համապատասխան ճյուղերում։ Հետևաբար, միևնույն գործարանը, որը թողարկում է արդյունաբերական արտադրանք, բայց սպասարկում է գիտությանը, կարող է ունենալ իր գործունեության պլանավորման զանազան ցուցանիշներ։ Մինչդեռ փորձնական ձեռնարկությունների գործունեության պլանավորման ցուցանիշների համակարգն իր առանձնահատկություններով հանդերձ պետք է արտացոլի նաև փորձնական արտադրանքը մշակող և թողարկող արտադրական ձեռնարկությունների պլանավորման ցուցանիշների էությունը։ «Գիտություն և գիտական սպասարկում» ճյուղի պլանավորման ցուցանիշների համակարգը հարկ է առավելագույն չափով մոտեցնել նյութական արտադրության ճյուղերի պլանավորման ցուցանիշներին։

Գիտության վերածումն անմիջական արտադրաուժի ավելի ամրակուռ է դարձնում «գիտություն-տեխնիկա-արտադրություն-սպառում» օղակների շղթան։ Այժմ գիտությունը վերածվում է գիտաարտադրական ցիկլերի նախաարդյունաբերական օղակի, անմիջականորեն ներգործելով ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման ընթացիկ պրոցեսների և հեռանկարի վրա՝ կազմակերպորեն մերձենալով արտադրությանը։ Այդ տեսակետից, երբ գիտությունն ինքը (առաջին հերթին աշխատանքային ռեսուրսների և արտադրական ֆոնդերի միջոցով) դառնում է ժամանակակից արտադրության տարր, ապա արտադրության արդյունքները (այսինքն՝ արտադրանքը կամ վերջնական արդյունքը) նույնպես պայմանավորված են գիտության ծառայություններով, և, հետևաբար, այս կամ այն արտադրության համար նախատեսվող ծախսումները պետք է ընդգրկեն նաև գիտության վրա կատարված ծախսումները։ Ստացվում է, որ ծախսումների մի մասը նյութական արտադրության ոլորտից անցնում է գիտության և գիտական սպասարկման ոլորտը (ինչ-որ չափով նաև կրթության ոլորտը)։ Ծախսումների այդ մասի անցումը գիտությանը այն տպավորությունն է ստեղծում, թե կրճատվում են արտադրանքի մեկ միավորի արտադրության համար կատարվող ծախսումները և բարձրանում է հանրային արտադրության արդյունավետությունը, այսինքն, արտադրանքի թողարկվող միավորի մեջ կրճատվում է առարկայացված աշխատանքի ծավալը։ Իրականում աշխատանքի և ծախսումների արդյունքների ճիշտ գնահատումը պետք է ընդգրկի բոլոր այն ծախսումները, որ հասարակությունը կատարել է արտադրանքի մեկ միավորի թողարկման համար։ Մինչև այժմ այդպիսի հաշվառում չի կատարվում, որի հետևանքով սքողվում է ծախսումների արդյունավետությունը, և դա էլ հանգեցնում է հանրային արտադրության արդյունավետության բարձրացման թյուր մեկնաբանման, ժողովրդական տնտեսության ճյուղերում այդ ցուցանիշի ոչ ճիշտ պլանավորման։

Արտադրության համար կատարվող ծախսումների մեջ գիտության բաժնի հաշվառումը դեռևս չունի մեթոդաբանական և մեթոդական մշակում։ Այժմ ձեռնարկության արտադրական ծախսումների մեջ հաշվի է առնվում գիտության վրա կատարվող ծախսումների փոքր մասը, որն իրականում պետությունը կատարում է արտադրության ընդլայնման և արտադրանքի որակի կատարելագործման կամ նոր արտադրատեսակների մշակման համար։

Ճյուղային գիտահետազոտական ինստիտուտները, գիտական կազմակերպությունները և կիրառական հետազոտություններով ու մշակումներով զբաղվող արտադրական գերատեսչություններին կից գործող օբյեկտները նպատակահարմար է դասել նյութական արտադրության ոլորտի կարգը և դրանց գործունեության վրա կատարվող ծախսումների (միաժամանակյա և ընթացիկ) պլանավորման ցուցանիշներում արտացոլել արտադրական ծախսումների պլանավորման ցուցանիշների առանձնահատկությունը։ Հետևաբար, ճիշտ չէ,



երբ ոչ արտադրական ոլորտը ամբողջությամբ դիտվում է որպես ժողովրդական տնտեսության այնպիսի բնագավառ, որը արդի պայմաններում «դոտացիա» է ստանում նյութական արտադրության ոլորտից։ Այսպիսով, ոչ արտադրական ոլորտի ճյուղերի բաժանումը խմբերի հնարավորություն է ընձեռում տնտեսական արդյունքի յուրատեսակ ցուցանիշների համակարգ մշակելու ո՛չ միայն այդ ոլորտի առանձին բնագավառների, այլև ճյուղերի ամբողջ խմբի մասշտաբով։ Նման համակարգը կարող է ընդգրկել այնպիսի ցուցանիշներ, որոնք բնութագրում են նյութականացված, տնտեսական, սոցիալական արդյունքի նորմատիվը։ Հետևաբար, հետազոտվող ոլորտում նման նորմատիվները բնութագրող ցուցանիշների համակարգի ստեղծումը կարող է անմիջականորեն ազդել այդ ոլորտի ճյուղերի զարգացման պլանավորման ու կարգավորման վրա, ինչպես մոտ հեռանկարի, այնպես էլ զարգացման համեմատաբար ավելի տևական շրջանի համար։

Ծառայությունների բնագավառում կատարվող աշխատանքի արդյունքները, ստեղծելով որոշակի սպառողական արժեքներ նաև ապրանքափողային հարաբերությունների ժամանակ, փոխանակվելով նյութական արտադրության աշխատանքի արդյունքի հետ, տրամաբանական կլիներ համարել արտադրողական աշխատանք, քանի որ ի վերջո այն չափակցվում է այլ ապրանքների արժեքի հետ։ Ծառայությունների ճնշող մասը նույնպես արտադրողական աշխատանքի արդյունք է, այլապես այն չի կարող փոխանակվել նյութական ոլորտի աշխատանքի արդյունքների հետ։ Ուրեմն, ոչ նյութական արտադրության ճյուղերում նույնպես ստեղծվում է այնպիսի հարստություն (նյութական, հոգևոր), որը պետք է հաշվի առնվի ու պլանաչափ կարգավորվի ժողովրդական տնտեսության մասշտաբով։ Դա պետք է արվի ոչ նյութական արտադրության մեջ աշխատանքի պլանավորման ցուցանիշների համակարգ մշակելու միջոցով՝ հանրօգուտ աշխատանքի ծախսումների ընդհանրացված պատկերը ստանալու և արտադրության երկու ոլորտների օրինաչափ զարգացման ընդհանուր միտումը որոշելու համար։

Ոչ նյութական արտադրությունը բնակչության բազմապիսի, բազմասեռ պահանջմունքների բավարարմանը ծառայող ամբողջական հասարակական աշխատանքի անբաժանելի մասն է։ Այդ աշխատանքի արդյունքները որոշակի սպառողական արժեքներ են, որոնք ապրանքափողային հարաբերությունների պայմաններում իրենց ճնշող մեծամասնությամբ դառնում են որոշակի արժեքներ։ Ոչ նյութական արտադրության զանազան ճյուղերում աշխատանքի քանակական և որակական ծավալի ցուցանիշների համակարգում հարկ է մշակել համապատասխան ցուցանիշներ։ Այստեղ, որպես աշխատանքի բնորոշ առանձնահատկություն, հանդես է գալիս դրա որակը, որն ավելի բարդ ցուցանիշ է և պահանջում է խոր հետազոտություն ու վերլուծություն։

Ոչ արտադրական ոլորտի ճյուղերում ծախսված աշխատանքն իր բովանդակությամբ տարասեռ է, ուստի այն կկարգավորվի միայն զանազան ճյուղերի համար հատուկ ցուցանիշներով՝ ըստ արտադրողական աշխատանքի չափանիշների։ Դրանով հնարավորություն կընձեռվի վերստին հաշվարկելու նոր արժեքը՝ ազգային եկամուտը, այդ ոլորտի ճյուղերի աշխատանքի արտադրողականության առնչությամբ։

Արդ, ամեն մի երկրի էկոնոմիկայի զարգացումը բնութագրվում է նրանով, որ ոչ արտադրական ոլորտի աշխատանքն ավելի ու ավելի է ստանում ինդուստրիալ-տեխնիկական բնույթ։ Վերջինիս առանձին ճյուղերում աշխատանքն աստիճանաբար ընդունում է նյութական բարիքների ստեղծման բնույթ։ Եվ տեսական այն դրույթը, թե նոր արդյունքն ստեղծվում է միայն նյութական արտադրության ավանդական ճյուղերում, ինչ-որ չափով անհրաժեշտ է վերլուծել նոր ձևով, այսինքն՝ ոչ արտադրական ոլորտի մի շարք ճյուղեր դասել նյութական բարիքների արտադրության ոլորտը։ Քանի որ այդ ճյուղերը, որպես այդպիսիք, այլևս բնորոշ չեն ոչ արտադրական ոլորտի համար, դեռ ավելին, դառնում են նյութականացված բարիքների արտադրություն, ապա աշխատանքն այդ բնագավառում ընդունում է արտադրողական բնույթ։ Իսկ նյութական արտադրության ոլորտում ընդլայնվում է ոչ արտադրողական աշխատանքը



digitised by A.R.A.R.@

(բժշկական սպասարկումը, նախադպրոցական և երեկոյան կրթությունը, պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթությունը, սպորտը և այլն)։ Դա, իհարկե, չի կարող չազդել արտադրողական և ոչ արտադրողական աշխատանքի հարաբերակցության վրա և դրանով էլ փոխել աշխատանքի կառուցվածքը արտադրական ձեռնարկություններում։ Այսպիսով, այդ հարաբերակցությունն ավելի շատ է փոխվում գիտատեխնիկական հեղափոխության ներգործությամբ։ Ոչ արտադրական ոլորտի զարգացումը, և մասնավորապես ծառայությունների ծավալի մեծացումը, հանգեցրեց այն բանին, որ շեշտակիորեն փոխվեց զբաղվածությունը ժողովրդական տնտեսության երկու ոլորտներում։ 1961—1977 թթ. ոչ արտադրական ոլորտում զբաղվածների թվաքանակի աճի տարեկան միջին տեմպերը մոտավորապես չորս անգամ գերազանցել են նյութական արտադրության մեջ զբաղված աշխատողների քանակի աճին, իսկ այնտեղ զբաղված աշխատողների տեսակարար կշիռը 17-ից աճել ու հասել է 25,1 տոկոսի։

Ժողովրդական սպառման կառուցվածքում, իսկ կոնկրետ, ոչ արտադրական ոլորտում ծառայությունների բաժինը ունի ավելի արագ աճելու միտում։

Ոչ պակաս կարևոր գործոն է մեր հասարակության զանազան խավերի կողմից ծառայությունների օգտագործման ցուցանիշների փոփոխությունը։ Այժմ բնորոշ է գյուղում կենցաղի ծառայությունների ավելի արագ աճի միտում՝ քաղաքի համեմատությամբ։ Գյուղում ծառայությունների աճի բարձր տեմպերը բացատրվում են այն բանով, որ կոլտնտեսականները դեռևս զգալիորեն քիչ են օգտվում ծառայություններից։ Անհրաժեշտ է նշել, որ արդյունաբերական բանվորների և գյուղատնտեսության մեջ զբաղված բանվորների միջև ևս զգալի է ծառայությունների ծավալի տարբերությունը։ Առաջիկա տարիներին այդ տարբերությունը քաղաքի և գյուղի միջև դեռևս կպահպանվի մի շարք պատճառներով (աշխատանքի վարձատրության մակարդակը, արտադրուժերի զարգացումը և այլն)։ Սակայն ինչպես քաղաքում, այնպես էլ գյուղում ծառայությունների ծավալի աճի տեմպերը հեռանկարում չեն նվազելու։

Գյուղում ծառայությունների ծավալի արագ աճը նաև կոլտնտեսականների բարեկեցության բարձրացման և եկամուտների ավելացման, ազգային եկամտի վերաբաշխման արգասիքն է։ Դրա առանձնահատկություններից մեկը կոլտնտեսային շուկան է։ Անհրաժեշտ է նշել, որ մյուս հանրապետություններում նույնպես այդ գործոնը ոչ պակաս նշանակություն ունի ամբողջական եկամուտների վերաբաշխման համար՝ հօգուտ կոլտնտեսային գյուղացիության։

Ծառայությունների օգտագործման ծավալը պլանավորելիս անհրաժեշտ է հաշվի առնել մի շարք գործոններ, որոնք դուրս են մնում կարգավորող և հաշվառող մարմինների տեսադաշտից։ Այսպես, կոլտնտեսականների ընտանիքները ծառայությունների բնագավառում ունեցած իրենց պահանջմունքները բավարարում են ո՛չ միայն գյուղական վայրերում, այլև քաղաքում։ Առկա փոխադրամիջոցները (անձնական և հասարակական ուղևորատար տրանսպորտը) կրճատում են տարածություններն ու ժամանակը ծառայություններից օգտվելու համար։ Անհրաժեշտ է քաղաքային բնակչության համար իրականացված ծառայությունների ծավալի մի մասը փոխադրել գյուղական բնակչության հաշվին։ Նույնը կարելի է ասել նաև իրացված նյութական բարիքների մի մասի վերաբերյալ, որը վերագրվում է քաղաքային բնակչության պահանջմունքների բավարարմանը։ Խոսքը հատկապես բազմակի ու տևական գործածության ապրանքների մասին է, որը կենցաղային սպասարկման ծառայությունների մի մասն է։

Այսպիսով, ելնելով ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների ոգուց, ոչ արտադրական ոլորտի ճյուղերի պլանավորման կատարելագործումն արդի պայմաններում պահանջում է վերանայել գործող ցուցանիշների համակարգն այն առումով, որ դա առավել ճիշտ արտահայտի հասարակական արտադրության այդ կարևոր ճյուղի հետագա զարգացման ուղղությունները։

---

# ԾԱՌԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՈԼՈՐՏԻ ՆՈՐ ԲՆԱԳԾԵՐԸ

**Գ. Ս. ՄԱԼԽԱՍՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

ԱՆՑԱԾ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ մեր երկիրը նոր, կարևոր քայլ կատարեց ժողովրդական տնտեսության նյութատեխնիկական բազայի զարգացման և ամրապնդման ճանապարհին։ Է՛լ ավելի կատարելագործվեց հասարակության սոցիալական կառուցվածքը, ձեռք բերվեց աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակի զգալի աճ։ Հետևողականորեն իրականացվում է ժողովրդի բարեկեցության բարձրացման կուսակցության քաղաքականությունը։

ՍՄԿԿ XXVI համագումարը նշեց, որ տասներորդ հնգամյակում անհրաժեշտ պայմաններ ստեղծվեցին սոցիալ-տնտեսական երկարաժամկետ ծրագրին համապատասխան նոր, առավել խոշոր խնդիրներ լուծելու համար։ Հնգամյակը խոր հետք թողեց մեր երկրի պատմության մեջ սոցիալական այն խնդիրների լուծման մասշտաբներով, որոնք առնչվում են սովետական մարդկանց կենսապայմանների բարելավման, նրանց նյութական և կուլտուրական պահանջմունքների բավարարման հետ։ Բավական է նշել, որ ազգային եկամտի չորս-հինգերորդը անմիջականորեն օգտագործվել է բնակչության սպառման, բնակարանային պայմանների բարելավման, սոցիալ-կուլտուրական միջոցառումների իրականացման նպատակով։

ՍՄԿԿ XXVI համագումարը նոր հնգամյակը բնութագրեց որպես կարևոր փուլ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ճանապարհին։ Գլխավոր խնդիրներով և տնտեսական գործունեության հիմնական ուղղություններով տասներորդ և տասնմեկերորդ հնգամյակները մի օրգանական ամբողջություն են։ Երկարաժամկետ ծրագրերի իրականացման իմաստով առանձնահատուկ կարևորություն ունի նոր հնգամյակը, որը մարմնավորում է երկրի սոցիալ-տնտեսական զարգացման կուրսի հաջորդականությունը և ութսունական թվականների համար կուսակցության ստրատեգիական առաջադրանքները։

Տասնմեկերորդ հնգամյակում կուսակցության սոցիալ-տնտեսական քաղաքականության հիմնական սկզբունքները ձևակերպված են դրա գլխավոր խնդրի մեջ, որը նախատեսում է «ապահովել սովետական մարդկանց բարեկեցության հետագա աճը ժողովրդական տնտեսության հաստատուն, առաջընթաց զարգացման հիման վրա, գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու, էկոնոմիկան զարգացման ինտենսիվ ուղու վրա փոխադրելու, երկրի արտադրական պոտենցիալն ավելի ռացիոնալ օգտագործելու, ռեսուրսների բոլոր տեսակներն ըստ ամենայնի խնայելու և աշխատանքի որակը բարելավելու հիման վրա»։

ՍՄԿԿ XXVI համագումարը սահմանեց կոմունիստական շինարարության նոր փուլի հիմնական խնդիրները, տվեց ժողովրդի բարեկեցության բարձրացման ուղիների և միջոցների, էկոնոմիկայի նյութատեխնիկական բազայի ամրապնդման, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման, զարգացած սոցիալիստական հասարակության արտադրահարաբերություններն աստիճանաբար կոմունիստականի վերաճելու ծավալուն բնութագիրը։

Հիմնական խնդիրներից մեկը, որին կուսակցությունն առաջնահերթ նշա-



digitised by A.R.A.R.@

նակություն է տալիս, բնակչության դրամական եկամուտների առկա անհամամասնության վերացումն է, սովետական մարդկանց անհրաժեշտ ապրանքներով և ծառայություններով ապահովելը, նկատի ունենալով, որ դրանց նկատմամբ պահանջմունքները դառնում են ավելի ու ավելի բազմազան։ Ահա թե ինչու դրամական եկամուտների աճին, հիմնական պարենային և ոչ պարենային ապրանքների պետական մանրածախ գների կայունությունն ապահովելուն զուգընթաց արվում է ամեն ինչ, որպեսզի բնակչության պահանջարկը վայելող ապրանքներն արտադրվեն անհրաժեշտ քանակությամբ և որակով, համաչափորեն զարգանա սպասարկման ոլորտը և որպեսզի, ինչպես համագումարում պատկերավոր ձևով նշեց ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ ընկեր Ն. Ա. Տիխոնովը, բնակչության համար բարձրորակ ու գեղեցիկ պատրաստված իրերը յուրաքանչյուր սովետական մարդու տունը համակեն ուրախությամբ և լավ տրամադրությամբ։

Հետևողականորեն շարունակելով իր տնտեսական ստրատեգիայի իրականացումը, որի բարձրագույն նպատակը ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի անշեղ վերելքն է, կուսակցությունը խնդիր է դնում առավելագույն չափով բավարարել պարենային և ոչ պարենային ապրանքների, կուլտուր-կենցաղային բազմազան ու բարձրորակ իրերի նկատմամբ սովետական մարդկանց հարաճուն պահանջմունքները։

Դրա հետ մեկտեղ կբարելավվեն կոմունալ-կենցաղային և բնակարանային պայմանները, բժշկական սպասարկումը, հետագա զարգացում կստանան կուլտուրան, ժողովրդական կրթության սիստեմը։ Սովետական ժողովրդի կենսապայմանների բարելավումը կոմունիստական շինարարության ներկա, ինչպես և հեռանկարային, փուլում մեծապես պայմանավորված է ծառայությունների ոլորտի հետագա զարգացմամբ ու կատարելագործմամբ, որը ժողովրդի բարեկեցության բարձրացման, աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավման, այն ամենի կարևոր բաղկացուցիչ մասն է, ինչը նպաստում է անհատի համակողմանի զարգացմանը, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործմանը։

Ծառայությունների ոլորտի բազմազան ճյուղերի զարգացման հիմնական ուղիները անմիջականորեն բխում են տասնմեկերորդ հնգամյակի գլխավոր խնդրից և կանխորոշվում են այն ռեսուրսներով, որոնք հասարակությունը տվյալ փուլում հատկացնում է այդ ոլորտին։

Դրամական եկամուտների մշտական աճը, բազմազան ապրանքների և ծառայությունների նկատմամբ բնակչության վճարունակ պահանջարկի լրիվ բավարարման պրոցեսը, հասարակության սոցիալական կառուցվածքի կատարելագործումը, քաղաքային և գյուղական բնակչության կյանքի պայմանների հավասարեցումը, այս ամենը սոցիալ-տնտեսական նախադրյալներ է ստեղծում ծառայությունների ոլորտի ինտենսիվ զարգացման համար, հատկապես այնպիսի ճյուղերի, ինչպիսիք են առևտուրը, հասարակական սնունդը, բնակչության կենցաղային սպասարկումը, բնակարանային-կոմունալ տնտեսությունը, կրթությունը, առողջապահությունը, կուլտուրան։

Հայկական ՍՍՀ-ում ծառայությունների ոլորտը արագ տեմպերով է զարգանում հատկապես վերջին մեկ և կես տասնամյակում։ Այդ ժամանակամիջոցում ապրանքաշրջանառությունն աճել է 3,3, կենցաղային սպասարկումը՝ 5,2, բնակֆոնդը մեծացել է 2,2 անգամ։ Հիվանդանոցներում մահճակալների թիվն ավելացել է 1,6, իսկ բժիշկներինը՝ երկու անգամ։ Աճել է սովորողների թիվը, կայուն բազա է ստեղծված կուլտուրայի հետագա զարգացման համար։

Վճարովի ու անվճար ծառայությունների ծավալի և կառուցվածքի մշտական ընդլայնումն անհրաժեշտաբար պահանջում է բնակչության սպասարկման կուլտուրայի և որակի այնպիսի բարձրացում, որը համապատասխանի ծառայություններից օգտվողների աճող հնարավորություններին։ Ընթացիկ հնգամյակը կարևոր քայլ կլինի այդ ճանապարհին։ Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման 1981—1985 թթ. և մինչև 1990 թ. ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում նշվում է միջոցառումների կոմպլեքս, որի իրականացումը նախադրյալներ կստեղծի սպառման ներկա կառուցվածքը անհրաժեշտ



նորմաներին մոտեցնելու համար։ Այդ միջոցառումներում կարևորվում է ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը։ ՍՄԿԿ XXVI համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ նոր հնգամյակում «նախատեսված է որոշակիորեն արագացնել «Բ» խմբի զարգացման տեմպերը. դրանք որոշ չափով կգերազանցեն «Ա» խմբի աճի տեմպերը։ Արդյունաբերության «Բ» խմբի ճյուղերի զարգացման առաջանցիկ տեմպերը տասնմեկերորդ հնգամյակի սկզբունքային առանձնահատկությունն է։ Ընթացիկ հնգամյակում նախատեսված է սպառման առարկաների արտադրության աճ 27—29 տոկոսով, այդ թվում՝ թեթև արդյունաբերության արտադրանքինը՝ 18—20, սննդի արդյունաբերությանը՝ 23—26 տոկոսով, կուլտուր-կենցաղային և տնտեսական օգտագործման ապրանքներինը՝ 1,4 անգամ։ Ընդ որում, սառնարանների արտադրությունը, օրինակ, կավելանա 12 տոկոսով, փոշեծծիչներինը՝ 45, կարի և լվացքի մեքենաներինը՝ 20 տոկոսով։ Կավելանա ատաղձագործական, փականագործական, այգեբոստանային գործիքների, գյուղատնտեսական աշխատանքների փոքր մեքենայացման միջոցների արտադրությունը և այլն։ Տեխնիկապես բարդ, երկարատև օգտագործման իրերը կլինեն խնայողաբեր, կունենան սպառողական և գեղագիտական բարելավված հատկություններ։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում լայն սպառման ապրանքների արտադրության ընդլայնման և ազգաբնակչության եկամուտների պլանաչափ աճի շնորհիվ տասնմեկերորդ հնգամյակում էապես կզարգանան առևտուրը և հասարակական սնունդը։ Ամբողջ երկրի մասշտաբով մանրածախ ապրանքաշրջանառությունը կաճի 22—25, իսկ մեր հանրապետությունում՝ 30—32 տոկոսով։ Ընթացիկ հնգամյակում մանրածախ ապրանքաշրջանառության զարգացումն ուղեկցվում է դրա ապրանքային կառուցվածքում տեղի ունեցող էական փոփոխություններով, որն արտացոլում է ժողովրդի բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացումը։ Դա առանձնապես վերաբերում է ոչ պարենային ապրանքների, առաջին հերթին կուլտուր-կենցաղային և տնտեսական նշանակության իրերի արտադրանքի և սպառման տեմպերի աճին։ Սա այն օրինաչափություններից է, որը սկզբունքային նշանակություն ունի հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման պլանում։

Երկարատև գործածության ապրանքների վաճառքի աճը պայմանավորվում է ո՛չ միայն սովետական մարդկանց դրամական եկամուտների ավելացմամբ, այլև աշխատավորների ազատ ժամանակի մեծացմամբ, բնակարանային պայմանների բարելավմամբ, կենցաղային սպասարկման ընդլայնմամբ և, որ առանձնապես հարկ է շեշտել, բնակչության հոգևոր պահանջմունքների աճով։

Սննդամթերքների սպառման չափանիշը, որպես կանոն, այն ռացիոնալ նորմաներն են, որոնք համապատասխանում են բնակչության ֆիզիկական և հոգևոր բազմազան պահանջմունքներին։ Հարկ է նշել, որ այսօր դեռևս լիովին չեն բավարարվում սովետական մարդկանց բոլոր պահանջմունքները պարենային և մի շարք արդյունաբերական ապրանքների նկատմամբ։ Դեռևս բավարար չեն անասնապահության, այգեգործության և որոշ այլ մթերքների պաշարները։ Այդ պրոբլեմի լուծման նպատակով ՍՄԿԿ XXVI համագումարն անհրաժեշտ համարեց արդեն այժմ ձեռնամուխ լինել սննդամթերքի և ժողովրդական սպառման ապրանքների արտադրության աճի ծրագրի վերաբերյալ կոնկրետ առաջարկությունների մշակմանը։ Այդպիսի ծրագրի մշակումը և իրականացումը կպահանջեն առևտրի բազայի հետագա զարգացում և ամրապնդում, ժամանակակից խանութների, այդ թվում՝ նաև արդյունաբերական մինիստրությունների, կոլտնտեսությունների և սովխոզների ֆիրմային խանութների ցանցի ընդլայնում, առևտրի առաջավոր ձևերի կիրառում, որոնք կբարձրացնեն բակչության սպասարկման մակարդակը, կտնտեսեն գնումներ կատարելու վրա ծախսված ժամանակը։ Ընթացիկ հնգամյակի տարիներին հանրապետությունում կամրապնդվի առևտրի նյութատեխնիկական բազան։ Առևտրական մի շարք խոշոր օբյեկտներ կկառուցվեն Երևանում, Լենինականում, Կիրովականում, Ծաղկաձորում և այլուր։ Էապես կընդլայնվի գյուղական խանութների ցանցը։ Կաճի սպառողական կոոպերացիայի դերը՝ գյուղում առև-



digitised by A.R.A.R.@

տրի զարգացման, բնակչության սպասարկման որակը և կուլտուրան բարձրացնելու, ինչպես նաև հումքային և պարենային պաշարների համալրման գործում։

Մեծ խնդիրներ են ծառացած հասարակական սննդի զարգացման և բնակչության սննդի կառուցվածքի բարելավման բնագավառում։ Հանրապետությունում հասարակական սննդի ձեռնարկությունների ապրանքաշրջանառությունը կաճի 38,6 տոկոսով։ Դա նշանակում է, կպահանջվի հետևողականորեն ներդնել սննդի պատրաստման արդյունաբերական մեթոդները, ճաշարանները կիսաֆաբրիկատներով կոմպլեքսայնորեն մատակարարելը, բնակչության տարբեր կոնտինգենտների սննդի կազմակերպումը։ Ինչպես և նախկինում, հանրապետությունում հասարակական սննդի ոլորտում սեփական արտադրանքի շրջանառությունը կաճի առավել բարձր տեմպով, քան գնվող մթերքներինը։ Դա համապատասխանում է այդ ճյուղի ձեռնարկությունների հիմնական դերին։

Հնգամյակում բարձր տեմպերով կզարգանա կենցաղի ծառայությունը, որը լուծում է ո՛չ միայն տնտեսական, այլև սոցիալական պրոբլեմներ։ Այն, առավել քան ժողովրդական տնտեսության որևէ այլ ճյուղ, կոչված է բավարարելու ազգաբնակչության այնպիսի սոցիալական պահանջմունքներ, ինչպիսիք են տնային տնտեսությունում կանանց ցածր արտադրողական աշխատանքից ազատելը, մարդկանց ազատ ժամանակի օգտագործումը և այլն։ Կենցաղի ծառայությունը վերջին հնգամյակներում դարձել է ժողովրդական տնտեսության բարձր մեքենայացված ճյուղ։ Բավական է ասել, որ մասնագիտացման և ներսիստեմային կոոպերացման շնորհիվ ընթացիկ հնգամյակում հանրապետությունում կենցաղային ծառայությունների իրացումը կավելանա 1,3 անգամ, ընդ որում, գյուղական վայրերում նախատեսվում են աճի ավելի բարձր տեմպեր։ Զգալի աշխատանք կկատարվի սպասարկման ձեռնարկությունների ցանցի ընդլայնման և դրանց առավել ռացիոնալ տեղաբաշխման նպատակով։ Կոմպլեքսային ընդունման կետերի ցանցի ընդլայնումը հնարավորություն կընձեռի էապես բարելավելու բնակչության կենցաղային ծառայությունը։ Դրանց ծառայությունների տեսականու ընդլայնումը և որակի բարձրացումը, սպասարկման առաջավոր ձևերի ներդրումը նպատակամղված են նախ և առաջ սպառողների ժամանակի տնտեսմանը։

Ժողովրդի կենսապայմանների անշեղ բարելավման ասպարեզում էական դեր ունի բնակարանային պրոբլեմը, որը սրությամբ դրվեց կուսակցության XXVI համագումարում։ Ինչպես նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, այդ բնագավառում հսկայական աշխատանք է կատարված, սակայն դեռևս կան ոչ քիչ ընտանիքներ, որոնք ապրում են կոմունալ անբարեկարգ բնակարաններում, տարիներով բնակարանի են սպասում շատ նորապսակներ։

Կուսակցությունը և կառավարությունը վարում են սովետական մարդկանց բնակարանային պայմանների հետևողական բարելավման կուրս։ Ընթացիկ հնգամյակում ևս կպահպանվեն բնակարանային շինարարության բարձր տեմպեր։ Երկրում նախատեսվում է կառուցել 530—540 միլիոն քառակուսի մետր բնակտարածություն։ Նոր բնակարանները կլինեն առավել հարմարավետ և բարեկարգ, ընդ որում, պետական բնակֆոնդը կբաշխվի այն հաշվով, որ յուրաքանչյուր ընտանիք ունենա առանձին բնակարան։ Դա նշանակում է, որ սովետական մարդկանց բնակարանային պայմանների հետագա բարելավումը կիրականացվի՝ հաշվի առնելով հասարակության անդամների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման բնագավառում բնակարանի դերը։ Այդ պրոբլեմի լուծման ասպարեզում մեծ նշանակություն է տրվում կոոպերատիվ և անհատական բնակարանային շինարարությանը։

Հիմնական ուղղություններում խնդիր է դրվում զարկ տալ կոոպերատիվ հիմունքներով բնակարանային շինարարությանը և անհատական բնակարանների կառուցմանը՝ հատկապես ոչ մեծ քաղաքներում, ավաններում և գյուղական վայրերում։ Ընդ որում, միավորումներն ու ձեռնարկությունները տուն կառուցելու համար կոլեկտիվի անդամներին կօժանդակեն խրախուսման ֆոնդերի հաշվին։

Ընթացիկ հնգամյակում բնակարանային շինարարության ասպարեզում էական տեղաշարժեր կկատարվեն մեր հանրապետությունում։ 1981—1985



թվականներին շահագործման կհանձնվի 7,5 միլիոն քառակուսի մետր բնակտարածություն, կամ 31,4 տոկոսով ավելի, քան տասներորդ հնգամյակում։ Այսպիսով, բնակտարածությամբ հանրապետության մեկ բնակչի միջին ապահովվածությունը կհասնի 11,8—11,9 քառակուսի մետրի։

Ծառայությունների ընդհանուր ծավալում նշանակալի է սպասարկման այն ճյուղերի դերը, որ հասարակությունը տրամադրում է անվճար։ Դրանք հիմնականում այնպիսի ծառայություններն են, որոնք բավարարում են հասարակության անդամների սոցիալ-կուլտուրական պահանջմունքները։ Այդ կապակցությամբ հնգամյակի սոցիալական ծրագրի իրականացման գործում կարևոր տեղ են գրավում առողջապահությունը, հոգատարությունը մարդկանց առողջության նկատմամբ։ Վերջին տարիներին երկրում խոշոր միջոցառումներ են իրականացվում ազգաբնակչության բժշկական սպասարկման մակարդակը և որակը բարելավելու նպատակով։ Դրանց թվում առանձնահատուկ նշանակություն ունի 1977 թ. ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած ծավալուն որոշումը՝ ժողովրդական առողջապահության հետագա բարելավման միջոցառումների մասին։ Ընթացիկ հնգամյակում է՛լ ավելի կզարգանա բուժպրոֆիլակտիկ հիմնարկությունների ցանցը, առավել կատարյալ կդառնա դրանց կառուցվածքը։ Հինգ տարում հիվանդանոցային մահճակալների թիվը երկրում կավելանա 8—10 տոկոսով։ Հանրապետությունում այդ աճը կհասնի 21 տոկոսի, իսկ մահճակալների թիվը՝ 33 հազարի։ Կշարունակվի արդի բժշկական սարքավորումներով խոշոր հիվանդանոցների շինարարությունը։ Կընդլայնվի բնակչությանը ամբուլատոր-պոլիկլինիկական օգնություն ցույց տվող բուժհիմնարկությունների ցանցը։ Դա, ինչպես հայտնի է, առողջապահության առավել մասսայական և բնակչությանը մոտեցված ծառայությունն է, որտեղ ցույց է տրվում նախնական բուժօգնություն։ Հատուկ ուշադրություն կնվիրվի այդ ցանցի ռացիոնալ տեղաբաշխմանը, այն հաշվով, որպեսզի առաջին պլանում լինեն ամբողջ բնակչության համար մասնագիտացված բուժօգնության մատչելիությունը, բժշկական պրակտիկայում գիտատեխնիկական նվաճումների լայն ներդրումը, սրտանոթային , ուռուցքաբանական և էնդոկրին հիվանդությունների դեմ պայքարի պրոբլեմների լուծման նպատակով գիտական հետազոտությունների խորացումը։ Միաժամանակ նախատեսվում է էապես բարելավել բժշկական կադրերի աշխատանքի պայմանները՝ բժիշկների և միջին բուժանձնակազմի աշխատանքի կազմակերպման առաջավոր ձևերի և մեթոդների կիրառման միջոցով։

Այսպիսով, ազգաբնակչության բուժսպասարկման մակարդակը և որակը բարձրացնելու վերաբերյալ ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած խնդիրների իրականացումն անհրաժեշտ նախադրյալներ են ստեղծում սոցիալական զարգացման այնպիսի պրոբլեմների լուծման համար, ինչպիսիք են սովետական մարդկանց առողջության ամրապնդումը և կյանքի տևողության ավելացումը, ժամանակավոր անաշխատունակության պատճառով աշխատաժամանակի կորուստների էական կրճատումը։ «Պետք է ամեն ինչ անել,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում,— որ սովետական մարդը միշտ և ամենուրեք կարողանա ժամանակին ստանալ որակյալ և սրտացավ բուժօգնություն»։

Կուսակցության համագումարը, որպես սոցիալական կարևորագույն խնդիր, առաջադրեց ժողովրդական կրթության հետագա զարգացման ապահովումն այն հաշվով, որպեսզի առավելագույն չափով բավարարվեն մասնագետների և որակյալ բանվորների նկատմամբ ժողովրդական տնտեսության պահանջները։

Ծավալվող գիտատեխնիկական հեղափոխության ժամանակաշրջանում հանրային արտադրության մեջ և հասարակական կյանքում առհասարակ աճում է անհատական գործոնի դերը։ Արտադրության արմատական տեխնիկական վերափոխումները մարդուց պահանջում են հանրակրթական, տեսական և մասնագիտական բարձր պատրաստականություն։ Այս պայմաններում կարևոր նշանակություն է ձեռք բերում բնակչության հանրակրթական մակարդակի



digitised by A.R.A.R.@

բարձրացումը, որտեղ գլխավոր դերը նախ և առաջ պատկանում է համընդհանուր միջնակարգ կրթությանը: Նոր հնգամյակում վճռական խնդիրներ են դրված հանրակրթական դպրոցի առջև: Ուսումնական ծրագրերի վերանայումը, ուսուցման ձևերի և մեթոդների կատարելագործումը, աշակերտների մեջ ուսման նկատմամբ սեր պատվաստելու ուսուցիչների կարողությունը սովորողների մեծամասնության համար կապահովեն կայուն գիտելիքներ, կնպաստեն նրանց ընդհանուր զարգացմանը: Նոր հնգամյակի Հիմնական ուղղություններում նախատեսվում է արտադրության հետ ուսուցման կապի ամրապնդմամբ էապես բարելավել բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատություններում մասնագետների պատրաստումը:

Միայն ընթացիկ հնգամյակում հանրապետությունում բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթությամբ մասնագետների թիվը կավելանա 70 հազարով, իսկ պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների ցանցի ընդլայնման շնորհիվ դրանցում սովորողների կոնտինգենտը կաճի մինչև 140 հազար մարդու: Սկսած 1982 թվականից, հանրապետության ուսումնական այդ ցանցում որակյալ բանվորական կադրեր կպատրաստվեն բացառապես միջնակարգ կրթությամբ:

Ութսունական թվականների սոցիալական առաջընթացի կարևորագույն բնագավառներից է սոցիալիստական կուլտուրայի և արվեստի զարգացումը, սովետական մարդկանց հոգևոր և գեղագիտական աճող պահանջմունքների առավել լրիվ բավարարումը: Մեր հանրապետությունում, ինչպես և ամբողջ երկրում, նախատեսվում է կուլտուր-լուսավորական հիմնարկությունների, մասսայական գրադարանների, ակումբների, թանգարանների ցանցի ընդլայնում, դրանց գործունեության բարելավում: Դրա հետ մեկտեղ, բարձր գեղարվեստական, արդիական գործերի ստեղծումը պահանջում է թատրոնների, կինոյի, հեռուստատեսության գործունեության մշտական կատարելագործում, դրանց ցանցի ընդլայնում, իսկ որ գլխավորն է՝ բնակչության սպասարկման որակի բարելավում: Այս հնգամյակում մեր հանրապետությունը կստանա արդիական մարզահամերգային դահլիճ՝ վեց հազար հանդիսատեսի համար, կկառուցվեն և կվերակառուցվեն մի շարք թատրոններ, համերգասրահներ և այլ օբյեկտներ: Մեծ ուշադրություն կնվիրվի գյուղական վայրերում կուլտուրայի օջախների զարգացմանը, դրանց նյութատեխնիկական բազայի ամրապնդմանը:

Սովետական պետությունը մշտապես ավելացնում է հասարակական գործունեության այնպիսի կարևոր ոլորտի զարգացմանը հատկացվող միջոցները, ինչպիսին է մշակույթը, քանզի դրա աճող դերը պայմանավորված է մեր հասարակարգի յուրաքանչյուր անդամի համակողմանի զարգացման պահանջով, ազատ ժամանակի օգտագործման ընդլայնվող հնարավորություններով:

Թևակոխելով տասնմեկերորդ հնգամյակը, սովետական ժողովուրդն ընթանում է ՍՄԿԿ XXVI համագումարի նշած ուղիով, կենսագործում ժողովրդական բարեկեցության անշեղ վերելքի ծրագիրը: «Կոնկրետ մարդու նկատմամբ, նրա կարիքների և պահանջմունքների նկատմամբ կոնկրետ հոգատարությունը,— ասել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— կուսակցության տնտեսական քաղաքականության սկիզբն է և վերջնակետը»: Այս ծրագրային դրույթի իրականացման նախադրյալը, բնակչության համար սպառման ապրանքների արտադրության ավելացմանը զուգընթաց, ծառայությունների ոլորտի հետագա զարգացումն է:



# ՄԻԱՎՈՐՎԱԾ ԱԶԳԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ

(Նպատակը, կառուցվածքն ու գործունեությունը)

Ֆ. Բ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

**ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆՆ** առաջինը, դեռևս 1941 թ. դեկտեմբերին, առաջադրեց պատերազմի ավարտից հետո կայուն և արդարացի խաղաղության պահպանման նպատակով միջազգային կազմակերպություն ստեղծելու գաղափարը: «Միավորված ազգեր» անվանումը մամուլում առաջին անգամ երևաց 1942 թ. հունվարին: Այսպես սկսեցին կոչել հակահիտլերյան կոալիցիայի երկրները՝ Վաշինգտոնում ՍՍՀՄ-ի, ԱՄՆ-ի և Մեծ Բրիտանիայի միջև համապատասխան դեկլարացիա ստորագրելուց հետո, որով վերջնականապես իրավաբանորեն ձևակերպվեց այդ դաշինքը: Միավորված ազգերի կազմակերպության ստեղծման առաջին գործնական քայլը կատարվեց 1943 թ. հոկտեմբերին ՍՍՀՄ-ի, ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի արտաքին գործերի մինիստրների և Չինաստանի ներկայացուցչի Մոսկովյան կոնֆերանսում, որտեղ ընդունվեց անվտանգության համընդհանուր կազմակերպության ստեղծման Դեկլարացիան:

ՄԱԿ-ի կանոնադրության նախագիծը նախապես մշակվեց Դումբարտոն Օքսում (ԱՄՆ) 1944 թ. օգոստոս—սեպտեմբերին երեք տերությունների՝ ՍՍՀՄ-ի, ԱՄՆ-ի և Մեծ Բրիտանիայի կոնֆերանսում, իսկ այնուհետև ստորագրվեց Սան Ֆրանցիսկոյում 1945 թ. հունիսի 26-ին՝ ֆաշիստական Գերմանիայի և միլիտարիստական Ճապոնիայի դեմ մղված պատերազմի մասնակից 51 պետությունների ներկայացուցիչների կողմից:

ՄԱԿ-ի կանոնադրությունն ուժի մեջ մտավ 1945 թ. հոկտեմբերի 24-ին: Այդ ժամանակվանից ի վեր այդ օրն ամեն տարի նշվում է որպես Միավորված ազգերի կազմակերպության միջազգային օր:

Սովետական Միությունը վճռական դեր խաղաց ՄԱԿ-ի՝ արդիականության այդ ամենախոշոր և համապարփակ միջկառավարական կազմակերպության, ստեղծման գործում, որի առջև պատմության մեջ առաջին անգամ ծառացած է տարբեր հասարակարգ ունեցող պետությունների լայն քաղաքական համագործակցության խնդիրը: ՄԱԿ-ի կանոնադրության հիմքում ամրագրված են պետությունների ստվերեն հավասարության, ժողովուրդների ինքնորոշման, ուժ չգործադրելու և երկրների միջև վեճերի խաղաղ կարգավորման սկզբունքները:

ՄԱԿ-ի կանոնադրությունը,— նշել է ՍՍՀՄ արտաքին գործերի մինիստր ընկ. Ա. Ա. Գրոմիկոն,— դարձել է խաղաղ գոյակցության խարտիա, ուր միջազգային օրենքի լեզվով թարգմանված են պետությունների խաղաղ գոյակցության գաղափարները, որոնք առաջադրել է Վ. Ի. Լենինը դեռևս սովետական պետության գոյության արշալույսին:

ՄԱԿ-ի ողջ գործունեության ընթացքում Սովետական Միությունը և մյուս սոցիալիստական երկրները հետևողականորեն շեշտել են, որ կայուն և հուսալի խաղաղությունն անհնարին է ռազմական պոտենցիալի մեծացման պայմաններում, որի հետ են հույս կապում իմպերիալիզմի և հետադիմության ուժերը:

Լ. Ի. Բրեժնևը նկատել է, որ «չնայած իր բոլոր թերություններին ու թուլություններին, Միավորված ազգերի կազմակերպությունն օգտակար ավանդ է ներդրել իր կանոնադրությունում հռչակված նպատակների և սկզբունքների իրականացման գործում: Այն նպաստել է մի շարք սուր միջազգային ճգնաժամերի հաղթահարմանը: Մենք նման արդյունքը համարում ենք որպես Սովետական Միության, սոցիալիստական մյուս երկրների արտաքին քաղաքականության, մեր մոլորակի բոլոր խաղաղասեր ուժերի լուրջ հաջողություն...



digitised by A.R.A.R.@

Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա մենք ցանկանում ենք տեսնել արդյունավետ ու հեղինակավոր, իր ջանքերը խաղաղության ու անվտանգության պահպանմանն ուղղած Միավորված ազգերի կազմակերպություն: Սովետական Միությունը եռանդուն կերպով կպաշտպանի ՄԱԿ-ի նման գործունեությունը»:

70-ական թվականները, որ ՄԱԿ-ը հռչակեց «զինաթափման առաջին տասնամյակ», ամենից առաջ Սովետական Միության ջանքերի շնորհիվ դարձան միջազգային լարվածության թուլացման և աշխարհում քաղաքական մթնոլորտի բարելավման տարիներ:

Լարվածության թուլացումը ձախողելու և սպառազինությունների մրցավազքն ուժեղացնելու, սոցիալիստական և այլ երկրների նկատմամբ իրենց կամքը թելադրելու միտող ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի մի շարք երկրների ձեռնարկած գործողությունների հետևանքով, 70—80-ական թվականների սահմանագլխին միջազգային դրությունն աշխարհում կրկին լարվեց:

Արդի միջազգային բարդ իրադրությունում Սովետական Միությունն աշխարհի ժողովուրդներին կոչ է անում չթուլացնել, այլ, ընդհակառակը, ուժեղացնել բոլոր խաղաղասեր պետությունների ջանքերը՝ հանուն պատերազմի սպառնալիքի վերացման և սպառազինությունների մրցավազքի սանձման, հանուն զինաթափման:

Միջազգային կազմակերպությունները գործում են միջազգային հարաբերությունների համակարգում: Երկու հակադիր հասարակական սիստեմների գոյության պայմաններում, հասարակության զարգացման ընդհանուր օրենքներից զատ, միջազգային հարաբերությունների և միջազգային կազմակերպությունների վրա ազդում են նաև այդ հասարակական սիստեմներից յուրաքանչյուրին հատուկ զարգացման օրենքները:

Հակադիր սոցիալական սիստեմների պետությունների մասնակցությամբ գործող ընդհանուր միջազգային կազմակերպությունների իրավաբանական էությունը բնորոշվում է ինչպես սոցիալական զարգացման ընդհանուր օրենքներով, այնպես էլ նկատի են առնվում գոյություն ունեցող հասարակական սիստեմներից յուրաքանչյուրին հատուկ օրենքները:

Արդի միջազգային կազմակերպությունների բնույթի վրա էական ազդեցություն են գործում ապագաղութացման պրոցեսը և ազատագրված պետությունների զարգացման յուրահատուկ օրինաչափությունները: Այդ երկրներն իրենց սոցիալական առաջընթացով բաժանվում են երկու կարգի՝ կապիտալիստական և ոչ կապիտալիստական ուղիով զարգացող պետությունների: Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հաստատումով աշխատանքի միջազգային բաժանումը երկատվեց՝ կազմելով երկու համաշխարհային շուկա, որն իր հերթին պայմանավորեց տնտեսական կյանքի ինտերնացիոնալացումը: Այդ պրոցեսի արագացմանը ակտիվորեն նպաստում է գիտատեխնիկական հեղափոխությունը, որով պայմանավորվեց միջազգային տնտեսական, գիտատեխնիկական և այլ կապերի սերտացումը:

Այժմ աշխարհում կա շուրջ 2800 միջկառավարական և ոչ կառավարական միջազգային կազմակերպություն: Ամենից խոշոր, կարևոր և ընդհանուր միջկառավարական միջազգային կազմակերպությունը Միավորված ազգերի կազմակերպությունն է:

## ՄԱԿ-Ի ՆՊԱՏԱԿՆԵՐՆ ՈՒ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ

ՄԱԿ-ի հիմնական խնդիրն է. 1) խաղաղության ու միջազգային անվտանգության պահպանումը, 2) պետությունների միջև բարեկամական հարաբերությունների զարգացումը և մարդկությանը հուզող պրոբլեմների լուծման նպատակով գործունեության ծավալումը: ՄԱԿ-ը նախ և առաջ քաղաքական կազմակերպություն է, որի գլխավոր նպատակը մարդկությանը պատերազմից զերծ պահելն է:

Հայտնի է, որ Միավորված ազգերի կազմակերպությունը գերպետություն չէ: Այն սուվերենության իրավունք չունի: ՄԱԿ-ն ստեղծված չէ, որպեսզի կատարի որևէ որոշակի պետության հրահանգները, այլ իր մարմինների կանոնադրությունների շրջանակներում կատարի բոլոր անդամ-պետությունների համատեղ ընդունած որոշումները:

ՄԱԿ-ի նպատակները միաժամանակ իր գլխավոր սկզբունքներն են, այսինքն՝ նրա բոլոր անդամների փոխհարաբերությունները սահմանող իրավական նորմերը: Նման սկզբունքներ են.

— Կազմակերպության բոլոր անդամների սուվերեն հավասարությունը.

— Ժողովուրդների իրավահավասարությունն ու ինքնորոշումը.

— ՄԱԿ-ի անդամների միջև վեճերի հարցերի լուծումը խաղաղ ճանապարհով.

— Ագրեսորի դեմ կոլեկտիվ հարկադիր միջոցների կիրառումը.

— Ցանկացած պետության ներքին իրավասությանը ենթակա գործերին չմիջամտելը.

— Մեծ տերությունների միաձայնությունը Անվտանգության խորհրդում:



## ՄԱԿ-Ի ԿԱԶՄՈՒՄ ՆՈՐ ԱՆԴԱՄՆԵՐԻ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹՅՈՒՆԸ

ՄԱԿ-ի կանոնադրության համաձայն, նրա անդամ կարող են լինել բոլոր սուվերեն խաղաղասեր պետությունները, որոնք ընդունում են կանոնադրությամբ պահանջվող պարտականությունները և ցանկանում են կատարել դրանք:

ՄԱԿ-ի նոր անդամի ընդունելությունը տեղի է ունենում Անվտանգության խորհրդի երաշխավորմամբ, Գլխավոր ասամբլեայի հատուկ որոշմամբ՝ նրա հերթական նստաշրջանից առաջ:

ՄԱԿ-ի կանոնադրությունը պարբերաբար խախտող անդամը Անվտանգության խորհրդի նախնական համաձայնությամբ կամ առաջարկով կարող է վտարվել կազմակերպությունից:

Այժմ ՄԱԿ-ի անդամ են 154 պետություններ:

ՄԱԿ-ի կանոնադրությունը բաղկացած է նախադրությունից, 19 գլուխներից և Միջազգային դատարանի Ստատուտից, որը Կանոնադրության անքակտելի մասն է: ՄԱԿ-ի մշտական նստավայրը Նյու-Յորք քաղաքն է: ՄԱԿ-ի շտաբ-կայանին կից կան կազմակերպության անդամ պետությունների մշտական դիվանագիտական ներկայացուցչություններ:

## ՄԱԿ-Ի ԳԼԽԱՎՈՐ ՄԱՐՄԻՆՆԵՐԸ

Ըստ կանոնադրության, ՄԱԿ-ի գլխավոր մարմիններն են. Գլխավոր ասամբլեան, Անվտանգության խորհուրդը, Տնտեսական և Սոցիալական խորհուրդը, Խնամակալության խորհուրդը, Միջազգային դատարանը, Քարտուղարությունը:

## ՄԱԿ-Ի ԳԼԽԱՎՈՐ ԱՍԱՄԲԼԵԱՆ

ՄԱԿ-ի բարձրագույն մարմինը Գլխավոր ասամբլեան է՝ Կազմակերպության բոլոր անդամների ընդհանուր ժողովը:

Գլխավոր ասամբլեայի պարտականություններից է ՄԱԿ-ի ցանկացած մարմնի իրավասությանը ենթակա հարցերի ու գործերի քննարկումն ու դրանց վերաբերյալ առաջարկություններ ներկայացնելը , բացառությամբ Անվտանգության խորհրդի քննարկմանը ներկայացվող հարցերի ու գործերի: Նա դրանք ևս կարող է քննարկել, եթե այդ մասին խնդրի Անվտանգության խորհուրդը:

Գլխավոր ասամբլեան քննարկում է խաղաղության պահպանման ընդհանուր սկզբունքները:

Մասնավորապես այն լիազորված է քննարկելու միջազգային համագործակցության և միջազգային խաղաղության ու անվտանգության վերաբերյալ ցանկացած հարց.

— առաջարկություններ անել Կազմակերպության անդամներին և Անվտանգության խորհրդի ուշադրությունը հրավիրել այն իրադրությունների վրա, որոնք կարող են սպառնալ միջազգային խաղաղությանն ու անվտանգությանը.

— քննարկել ՄԱԿ-ի բոլոր մարմինների զեկուցագրերը.

— հաստատել ՄԱԿ-ի բյուջեն.

— Գլխավոր ասամբլեայի իրավասությանն են ենթակա նաև Անվտանգության խորհրդի, Տնտեսական և Սոցիալական խորհրդի ոչ մշտական անդամների և ՄԱԿ-ի մյուս մարմինների ընտրովի անդամների ընտրությունները.

— ՄԱԿ-ի անդամների ընտրությունն ու վտարումը, մյուս կարևոր հարցերի քննարկումն ու լուծումը:

Միաժամանակ ՄԱԿ-ի կանոնադրությունը նախատեսում է երկու արտակարգ կարևոր բացառություններ այս կարգից:

1. Գլխավոր ասամբլեան չի կարող որևէ առաջարկություն անել Անվտանգության խորհրդի իրավասությանը ենթակա ցանկացած վեճի կամ իրադրության վերաբերյալ, եթե Խորհուրդն ինքը չի դիմում նրան (պ. 1, հոդ. 2):

2. Գլխավոր ասամբլեան չի կարող սանկցիաներ (հարկադիր միջոցներ) ձեռնարկել ՄԱԿ-ի կանոնադրությունը խախտած պետությունների նկատմամբ: Միակ մարմինը, որը լիազորված է նման գործողություններ կատարելու, Անվտանգության խորհուրդն է (պ. 2, հոդ. 11):

Գլխավոր ասամբլեայի հերթական նստաշրջանը հրավիրվում է սովորաբար տարին մեկ, սեպտեմբերի երրորդ երեքշաբթի օրը: Բացի այդ, Անվտանգության խորհրդի կամ ՄԱԿ-ի անդամների մեծամասնության պահանջով կարող են հրավիրվել հատուկ կամ արտակարգ հատուկ նստաշրջաններ:

ՄԱԿ-ի գոյության ընթացքում կայացել են Գլխավոր ասամբլեայի 35 հերթական նստաշրջաններ, ՄԱԿ-ի տասնամյակին նվիրված մեկ հոբելյանական նստաշրջան և մի քանի հատուկ ու արտակարգ հատուկ նստաշրջաններ:

ՄԱԿ-ի անդամ յուրաքանչյուր պետություն կարող է նստաշրջան ուղարկել հինգից ոչ ավելի ներկայացուցիչներ: Պատվիրակության կազմում ընդգրկվում են ներկայացուցիչների հինգից ոչ ավելի տեղակալներ, անհրաժեշտ քանակությամբ խորհրդականներ, փորձագետներ և ուրիշներ:



digitised by A.R.A.R.@

Յուրաքանչյուր պետություն Ասամբլեայում, ինչպես նաև այն բոլոր մարմիններում, որտեղ ներկայացված է, ունի մեկ ձայն:

Գլխավոր ասամբլեայի պաշտոնական և աշխատանքային լեզուներն են անգլերենը, արաբերենը, իսպաներենը, չինարենը, ռուսերենը և ֆրանսերենը:

Ասամբլեայի նստաշրջանների աշխատանքները ընթանում են պլենար նիստերով և նրա կոմիտեների նիստերով:

Նստաշրջանների միջև ընկած ժամանակաշրջանում ՄԱԿ-ի ներսում և նրա բազմաթիվ մարմիններում կատարվում է ամենօրյա աշխատանք: Հերթական նստաշրջաններում Գլխավոր ասամբլեան հիմնում է ՄԱԿ-ի անդամ բոլոր պետությունները ներկայացնող յոթ կոմիտե, որոնք զբաղվում են.

— Առաջին կոմիտե՝ քաղաքական և անվտանգության հարցերով կամ՝ հատուկ քաղաքական կոմիտե.

— Երկրորդ կոմիտե՝ տնտեսական և ֆինանսական հարցերով.

— Երրորդ կոմիտե՝ սոցիալական, հումանիտար և կուլտուրայի հարցերով.

— Չորրորդ կոմիտե՝ խնամակալության և ոչ ինքնավար տերիտորիաների հարցերով.

— Հինգերորդ կոմիտե՝ վարչական և բյուջետային հարցերով.

— Վեցերորդ կոմիտե՝ իրավական հարցերով:

Ասամբլեայի նստաշրջանի աշխատանքների կոորդինացման համար ստեղծվում է գլխավոր կոմիտե (յոթերորդ) և լիազորությունների հարցերով զբաղվող կոմիտե:

«Կարևոր հարցերի վերաբերյալ» (հոդ. 18) Գլխավոր ասամբլեայի որոշումները ընդունվում են Ասամբլեայի ներկա գտնվող և քվեարկությանը մասնակցող անդամների երկու երրորդի մեծամասնությամբ: Մնացած հարցերի վերաբերյալ որոշումները ընդունվում են ձայների պարզ մեծամասնությամբ: Բացի այդ, Գլխավոր ասամբլեան ունի մի շարք օժանդակ մարմիններ (մշտական կամ ժամանակավոր). Զինաթափման հանձնաժողով, Միջազգային իրավունքի հանձնաժողով, Գաղութային երկրներին և ժողովուրդներին անկախություն տալու վերաբերյալ Դեկլարացիայի իրականացման ընթացքի հարցերով հատուկ կոմիտե. Վարչական ու Բյուջետային հարցերով կոնսուլտատիվ կոմիտե. Անդամավճարների հարցերի կոմիտե. Ինվեստիցիաների կոմիտե. Ռևիզորների հանձնաժողով. Վարչական տրիբունալ. Տիեզերական տարածությունը խաղաղ նպատակներով օգտագործելու հարցերի հանձնաժողով:

## ՄԱԿ-Ի ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ

Կանոնադրության համաձայն, Անվտանգության խորհուրդը մշտապես գործող քաղաքական մարմին է, որի վրա է դրված միջազգային խաղաղությունն ու անվտանգությունը պահպանելու գլխավոր պատասխանատվությունը (պ. 1, հոդ. 24):

Անվտանգության խորհուրդը բաղկացած է 15 անդամներից, որոնցից հինգը՝ մշտական: Դրանք ՍՍՀՄ-ի, ԱՄՆ-ի, Չինաստանի, Անգլիայի և Ֆրանսիայի ներկայացուցիչներն են: Մնացած տասը ոչ մշտական անդամներին ընտրում է Գլխավոր ասամբլեան՝ երկու տարով, հաշվի առնելով աշխարհի հիմնական աշխարհագրական շրջանների ներկայացուցչությունը. հինգը՝ Աֆրիկայի և Ասիայի պետություններից, մեկը՝ Արևելյան Եվրոպայի պետություններից, երկուսը՝ Լատինական Ամերիկայի և Կարիբյան ծովի շրջանի պետություններից, երկուսը՝ Արևմտյան Եվրոպայի և այլ պետություններից (Կանադա, Ավստրալիա և Նոր Զելանդիա):

Ինչպես նշված է ՄԱԿ-ի կանոնադրության 39-րդ հոդվածում, Անվտանգության խորհուրդը որոշում է խաղաղության ամեն մի սպառնալիքի գոյությունը, խաղաղության ամեն մի խախտում կամ ագրեսիայի փաստ և առաջարկություններ է անում կամ որոշում, թե ինչ միջոցներ պետք է ձեռնարկել միջազգային խաղաղությունն ու անվտանգությունը պահպանելու և վերականգնելու համար:

Անվտանգության խորհուրդն իրավունք ունի.

ա) շահագրգռված երկրներից պահանջելու որոշակի ժամանակավոր միջոցառումների կատարում (կրակի դադարեցում, զորքերը ետ քաշել նախկին դիրքերը և այլն), որպեսզի կանխի իրադրության վատթարացումը (հոդ. 40).

բ) կիրառելու հարկադիր միջոցներ, որոնք կապված չեն զինված ուժեր գործադրելու հետ (հոդ. 41).

գ) գործադրելու այն զինված ուժերը, որոնք նրան են տրամադրել կազմակերպության անդամները (հոդ. 42):

Անվտանգության խորհուրդն ունի հետևյալ օժանդակ մարմինները. Ռազմաշտաբային կոմիտե, Փորձագետների կոմիտե, ՄԱԿ-ի կազմի մեջ նոր անդամների ընդունելության կոմիտե:

Կարևորագույն կանոնադրական դրույթ է միաձայնության սկզբունքը կամ «վետոյի իրավունքը», որը կիրառում են Անվտանգության խորհրդի մշտական անդամները (հոդ. 24): Այդ նշանակում է, որ Անվտանգության



խորհրդում, առանց հինգ մշտական անդամներից յուրաքանչյուրի համաձայնության, չի կարող ընդունվել ոչ մի որոշում, որն այս կամ այն չափով որոշելու լինի ձեռնարկվելիք քաղաքական քայլերը և վերաբերվի խաղաղությունն ու անվտանգությունը խախտող պետությունների գործողությունների դեմ ուղղված գործնական քայլերին: Բացառություն են կազմում պրոցեդուրային հարցերը, որոնց ընդունման համար բավական է ստանալ Խորհրդի ինն անդամների ձայները:

Խորհրդի մշտական անդամի ձեռնպահ լինելը չի խանգարի Անվտանգության խորհրդի որոշման ընդունմանը, եթե դրա օգտին քվեարկել են 15 անդամից 9-ը:

Անվտանգության խորհրդի մշտական անդամների միաձայնության սկզբունքը («վետոյի իրավունքը») կանոնադրության անկյունաքարն է, որի վրա է խարսխված ՄԱԿ-ի ողջ գործունեությունը:

Այս կանոնի սահմանումը թելադրված է նախ և առաջ այդ կազմակերպությունը իմպերիալիստական տերությունների հլու մարմնի չվերածելու երաշխիք ստեղծելու անհրաժեշտությամբ: Այն մասնավորապես նշանակում է, որ ուժի գործադրման և այլ սուր հարցերում ՄԱԿ-ը կարող է գործել միայն կապիտալիստական և սոցիալիստական պետությունների փոխադարձ համաձայնությամբ:

Վերջին տարիներս որոշ երկրներ, իբր թե ՄԱԿ-ի դերն ավելի բարձրացնելու նպատակով, փորձում են վերանայել այս կարևորագույն սկզբունքը, այլ կերպ ասած՝ ռևիզիայի ենթարկել ՄԱԿ-ի կանոնադրությունը:

Այդ իսկ պատճառով Սովետական Միությունն ամենայն հստակությամբ նշում է, որ նման առաջարկության իրականացումը կըխարխլի ՄԱԿ-ի բուն գոյության հիմքերը և դրանով իսկ անուղղելի վնաս կհասցնի խաղաղությանը և ժողովուրդների ազատությանը:

Անվտանգության խորհրդի նիստ կարող է հրավիրվել ցանկացած ժամանակ, եթե դա պահանջում է իրադրությունը:

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ

ՄԱԿ-ի կանոնադրության համաձայն (հոդ. 55), այս Խորհուրդն զբաղվում է տնտեսական, սոցիալական, կուլտուրայի, կրթության, առողջապահության և այլ բնագավառների միջազգային հարցերի ուսումնասիրությամբ և, զեկուցման կարգով, ներկայացնում իր առաջարկությունները Գլխավոր ասամբլեային, ՄԱԿ-ի անդամ առանձին պետություններին և շահագրգռված մասնագիտացված հաստատություններին:

Խորհրդի հիմնական գործունեության նպատակն է բարձրացնել բնակչության կենսամակարդակը և ապահովել նրա լրիվ զբաղվածությունը, պահպանել մարդու հիմնական իրավունքներն ու ազատությունները՝ անկախ ռասայից, սեռից, լեզվից ու կրոնից, և գործնականում իրականացնել պետությունների տնտեսական ու սոցիալական համագործակցությունը:

Խորհուրդը բաղկացած է 54 անդամներից, որոնց երեք տարի ժամկետով ընտրում է Գլխավոր ասամբլեան: Խորհրդի հերթական նստաշրջանները հրավիրվում են տարեկան երկու անգամ:

## ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹՅԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ

ՄԱԿ-ի այս մարմինը կոչված է հսկելու խընամարկյալ տերիտորիաներ կառավարող պետությունների կողմից խնամակալության միջազգային սիստեմի հիմնական խնդիրների կատարմանը (հոդ. 76): Գլխավոր ասամբլեայի XV նստաշրջանում 1960 թ. ընդունված գաղութային երկրներին ու ժողովուրդներին անկախություն տալու դեկլարացիայից և գաղութային սիստեմի քայքայումից հետո Խնամակալության խորհուրդն ըստ էության սպառեց իրեն: Փաստորեն Խորհրդի պարտականությունները հանձնված են Գլխավոր ասամբլեայի ընտրած 24-ի Կոմիտեին, որն իրականացնում է ապագաղութացման համար պայքարի Դեկլարացիայի հիմնական պահանջները:

## ՄԱԿ-Ի ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԴԱՏԱՐԱՆԸ

Միավորված ազգերի կազմակերպության գլխավոր դատական մարմինը Միջազգային դատարանն է, որի ստատուտն ընդունվել է ՄԱԿ-ի կանոնադրության հետ միաժամանակ: Միջազգային դատարանն իրականացնում է երկու ֆունկցիա.

1. Կարգավորում է պետությունների միջև ծագած վեճերը.

2. Իրավաբանական հարցերի վերաբերյալ կոնսուլտատիվ եզրակացություններ է ներկայացնում Անվտանգության խորհրդին, Գլխավոր ասամբլեային և ՄԱԿ-ի մյուս մարմիններին: Միջազգային դատարանը բաղկացած է 15 անդամներից, որոնք ընտրվում են 9 տարի ժամկետով՝ յուրաքանչյուր երեք տարուց հետո նորացնելով կազմի մեկ երրորդը, ընդորում, միևնույն պետության երկու քաղաքացիներ չեն կարող ընտրվել դրա կազմում:

Դատարանը բաղկացած է անկախ դատա-



digitised by A.R.A.R.@

վորների կոլեգիայից, որի անդամները ընտըրվում են իրենց քաղաքացիությունից անկախ՝ բարձր բարոյական հատկանիշների տեր, միջազգային իրավունքի ասպարեզում ճանաչված հեղինակություն ունեցող իրավաբաններից:

Միջազգային դատարանի ստատուսի կարևոր դրույթներից մեկն (ընդունված ՍՍՀՄ առաջարկությամբ) այն է, որ Դատարանում ոչ մի հարց չի կարող քննարկվել առանց այն պետության համաձայնության, որին վերաբերում է հարցը:

Դատարանն ընտրում է նախագահ և փոխնախագահ (երեք տարով) և նշանակում է քարտուղարություն: Դատարանի անդամներն իրենց պարտականությունները կատարելիս օգտվում են լրիվ դիվանագիտական իմունիտետից: Դատարանի վճիռը վերջնական է և բողոքարկման ենթակա չէ: Մասնակցությունը Միջազգային դատարանում ՍՍՀՄ-ին հնարավորություն է ընձեռում վճռականորեն հանդես գալու այդ մարմինը որպես գաղութատիրության, ռեակցիայի և ՄԱԿ-ի կանոնադրության խախտումների պաշտպանության միջոց օգտագործելու՝ իմպերիալիստական տերությունների փորձերի դեմ:

## ՄԱԿ-Ի ՔԱՐՏՈՒՂԱՐՈՒԹՅՈՒՆԸ

ՄԱԿ-ի կանոնավոր գործունեության ապահովման նպատակով ողջ կազմակերպական աշխատանքն իրականացնում է Քարտուղարությունը: Նրա պարտականություններն են՝ տեղեկացնել ՄԱԿ-ի մարմինների նիստերի մասին, տեխնիկապես ապահովել նստաշրջանների աշխատանքը, ՄԱԿ-ի մարմինների համար հայթայթել նյութեր, հրապարակել և առաքել հաշվետվությունները, պահպանել արխիվները և այլն: Քարտուղարությունն արձանագրում և հրապարակում է ՄԱԿ-ի անդամների միջև կնքված միջազգային համաձայնագրերը (հոդ. 102): Քարտուղարությունը գլխավորում է ՄԱԿ-ի գլխավոր քարտուղարը, որին Անվտանգության խորհրդի երաշխավորությամբ հինգ տարի ժամկետով նշանակում է Գլխավոր ասամբլեան, և որը հանդիսանում է Կազմակերպության վարչական պաշտոնատար անձը (հոդ. 97): Նա ամեն տարի Կազմակերպության աշխատանքի վերաբերյալ հաշվետվություն է ներկայացնում Գլխավոր ասամբլեային:

Գլխավոր քարտուղարը նշանակում է Քարտուղարության անձնակազմը և, ՄԱԿ-ի կանոնադրության համաձայն, անձնակազմի ընտրությունը պետք է տեղի ունենա արդարացի, աշխարհագրական սկզբունքով: Սակայն, խախտելով ՄԱԿ-ի Կանոնադրությունը, Քարտուղարության աշխատակիցների կազմում մշտապես գերակշռել են աշխատակիցները արևմտյան կապիտալիստական պետություններից՝ սահմանափակելով սոցիալիստական երկրների և Ասիայի ու Աֆրիկայի զարգացող պետությունների քաղաքացիների իրավունքները: Վերջին տարիներս արվել են որոշ քայլեր՝ այդ ոչ նորմալ դրությունը շտկելու նպատակով:

Քարտուղարությունն ունի հետևյալ կառուցվածքը.

Քաղաքական գործերի և Անվտանգության խորհրդի դեպարտամենտ (ավանդաբար ղեկավարում է ՍՍՀՄ ներկայացուցիչը). Տնտեսական և սոցիալական դեպարտամենտ. Խնամակալության և ոչ ինքնակառավարվող տերիտորիաների գործերի դեպարտամենտ. Վերահսկողության բյուրո. Կադրերի բյուրո. Իրավաբանական բաժին. Գլխավոր քարտուղարի վարչական գրասենյակ. Հատուկ քաղաքական հարցերով գլխավոր քարտուղարի տեղակալների գրասենյակ. Ինֆորմացիայի բյուրո. Կոնֆերանսների բյուրո: Քարտուղարության բոլոր թվարկված օղակների գլուխ են կանգնած գլխավոր քարտուղարի տեղակալները:

Վերոհիշյալ գլխավոր մարմինների հետ միասին ՄԱԿ-ին կից կան նաև ռեգիոնալ բնույթի մշտական օրգաններ, որոնք տնօրինում են աշխարհագրական շրջանների սոցիալ-տնտեսական հարցերը: Դրանք տնտեսական հանձնաժողովներն են— Եվրոպայինը, որի կենտրոնը Ժնևում է. Ասիայի և Խաղաղ օվկիանոսի երկրներինը, կենտրոնը՝ Բանգկոկում, Լատինական Ամերիկայի երկրներինը, կենտրոնը՝ Սանտյագոյում. Աֆրիկայի երկրներինը, կենտրոնը՝ Ադիս Աբեբայում:

Բոլոր այս կազմակերպություններում (բացի Լատինական Ամերիկայի երկրների համար հանձնաժողովից) Սովետական Միությունն իր մշտական ներկայացուցիչներն ունի:

## ՄԱԿ-Ի ՄԱՍՆԱԳԻՏԱՑՎԱԾ ՀԱՍՏԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Այսպես են կոչվում տնտեսական, սոցիալական, կուլտուրայի, կրթության, առողջապահության և այլ բնագավառների ինքնուրույն միջազգային կազմակերպությունները, որոնք ՄԱԿ-ի հետ կապված են համագործակցության վերաբերյալ հատուկ համաձայնագրերով: Մասնագիտացված հաստատությունները ՄԱԿ-ի մարմիններ չեն հանդիսանում: Սակայն ՄԱԿ-ը որոշ իրավունքներ ունի դրանց գործունեությունը կոորդինացնելու Տնտեսական և Սոցիալական խորհրդի միջոցով: Այս կազմակերպություններն իրենց ներկայացուցիչների միջոցով մասնակցում են ՄԱԿ-ի որոշ միջոցառումներին: Դրանք կարող են մասնակցել Տնտեսական և Սոցիալական խորհրդի զանազան խորհրդակցություններում կամ իրենց իրավասությունը շոշափող հարցերի քննարկմանը, բայց առանց վճռական ձայնի իրավունքի: Մասնագիտացված հաստատությունների հետ կնքված համաձայնագրերը ենթակա են Գլխավոր ասամբլեայի հաստատմանը:

Այժմ գոյություն ունի ՄԱԿ-ի 13 մասնագիտացված հաստատություն, որոնք ստորաբաժանվում են երեք հիմնական խմբերի:

## ՄԱԿ-Ի ԲՅՈՒՋԵՆ

Միավորված ազգերի կազմակերպության գործունեությունը ֆինանսավորվում է նրա անդամ պետությունների՝ ՄԱԿ-ի բյուջե մուծած անդամավճարների հաշվին: Այդ բյուջեն գոյանում է կանոնավոր և հոժարակամ մուծումներից: Կառավարությունները կամավոր մուծումներ են կատարում Կազմակերպության առաջարկության համաձայն՝ զարգացող երկրներին տնտեսապես օգնելու նպատակով: ՄԱԿ-ի սիստեմի միջազգային կազմակերպությունների բյուջեն միայն ՄԱԿ-ի անդամ երկրների կանոնավոր անդամավճարների հաշվին ներկայումս տարեկան կազմում է մոտ մեկ միլիարդ դոլար: Միմիայն ՄԱԿ-ի բյուջեն այժմ տարեկան կազմում է մոտ 500 միլիոն դոլար: Համեմատության կարգով նշենք, որ 1946 թվականին այն կազմել է 20 մլն դոլար, 1955 թվականին՝ մոտ 55 մլն դոլար, 1973 թըվականին՝ արդեն 225 միլիոն դոլար: ՄԱԿ-ի ծախսերի բաժանումը նրա անդամների միջև իրականացվում է անդամավճարների սանդղակի համաձայն: ՄԱԿ-ի անդամ պետությունների միջև ծախսերի բաժանման սկզբունքը սուր քաղաքական պայքարի առարկա է Գլխավոր ասամբլեայում և նրա մարմիններում: Անդամավճարների սանդղակի համաձայն, Անվտանգության խորհրդի հինգ մշտական անդամները և 18 այլ զարգացած արդյունաբերական երկրներ վճարում են ՄԱԿ-ի մշտական բյուջեի ողջ գումարի 90 տոկոսը:

## ՄԱԿ-Ի ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ

ՄԱԿ-ի շուրջ 36-ամյա գործունեությունը վկայում է, որ Միավորված ազգերի կազմակերպությունն անկասկած որոշակի դրական դեր է խաղացել հանուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության մղվող պայքարում և նկատելի ավանդ է ներդրել մի շարք կարևոր միջազգային պրոբլեմների լուծման գործում: Սակայն միջազգային կյանքի օրակարգում եղած կարևորագույն հարցերի լուծման գործում նրա ավանդի արդյունավետությունն ուղղակի կախման մեջ է եղել ՄԱԿ-ի անդամ պետությունների վարած քաղաքականությունից և նրանց կողմից Կազմակերպության կանոնադրությունը պահպանելուց:

Իր գործունեության տարիներին ՄԱԿ-ն ընդունել է այս կամ այն չափով զինաթափման խնդրի հետ առնչվող ավելի քան 300 բանաձևեր: Վերջին տարիներս ՍՍՀՄ-ի նախաձեռնությամբ ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեան մի շարք կարևոր բանաձևեր է ընդունել սպառազինությունների մրցավազքը սահմանափակելու և մասսայական ոչնչացման զենքի նոր տեսակների մշակումն ու արտադրությունն արգելելու հարցերի վերաբերյալ: ՄԱԿ-ը զգալի դեր է խաղացել այնպիսի կարևոր համաձայնագրերի կնքման գործում, ինչպիսիք են մթնոլորտում, տիեզերական տարածությունում և ջրի տակ միջուկային զենքի փորձարկումներն արգելելու մասին պայմանագիրը, միջուկային զենքի չտարածման մասին պայմանագիրը, բակտերիոլոգիական և թունավոր զենքի մըշակման, արտադրման և պաշարների կուտակման արգելման և դրանց ոչնչացման մասին Կոնվենցիան, բնական միջավայրի վրա ազդելու միջոցների ռազմական կամ ցանկացած այլ թշնամական օգտագործման արգելման մասին Կոնվենցիան և այլն: ՄԱԿ-ի պատմության մեջ հատուկ տեղ ունեն Գլխավոր ասամբլեայի XIV և XV նստաշրջանները, որոնցում Սովետական Միության նախաձեռնությամբ, մյուս սոցիալիստական պետությունների, Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրների ակտիվ աջակցությամբ, ընդունվեցին ընդհանուր և լրիվ զինաթափման մասին բանաձևերը և գաղութային երկրներին ու ժողովուրդներին անկախություն տալու մասին Դեկլարացիան:

Գաղութատիրությունը վերացնելու մասին 1960 թ. դեկտեմբերի 14-ի ՄԱԿ-ի Դեկլարացիայի պատմական նշանակությունը որոշվում է այն հանգամանքով, որ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը, որպես անդառնալի պատմական պրոցես, շարունակվում է նաև արդի փուլում:

Միջազգային հարաբերությունների պատմության մեջ կարևոր ուղենիշ հանդիսացավ 1975 թ. հուլիսին կայացած Եվրոպայի անվտանգության և համագործակցության վերաբերյալ Հելսինկիի խորհրդակցությունը և Եզրափակիչ ակտի ստորագրումը, որը կատար-





digitised by A.R.A.R.@

վեց ՄԱԿ-ի աջակցությամբ: 35 պետությունների բարձրագույն ղեկավարների մասնակցությամբ բազմակողմանի բանակցությունների այդ եզակի և աննախադեպ փորձի իրականացումը, որը լարվածության թուլացման և միջազգային մթնոլորտի մեղմացման կարևոր օղակ հանդիսացավ, հնարավոր դարձավ Սովետական Միության եռանդուն և հետևողական դիրքի շնորհիվ: Այդ խոշոր միջազգային ակտը շեշտեց սովետական դիվանագիտության նշանակալի դերը:

Նոր կարևոր նախաձեռնություններով և միջազգային իրադրությունը բարելավելու միջոցառումների լայն կոմպլեքսով մեր երկիրը հանդես եկավ ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի XXXV նստաշրջանում: ՍՍՀՄ-ի առաջարկով Գլխավոր ասամբլեան որոշում ընդունեց դատապարտել միջուկային զենքի «սահմանափակ» կամ «մասնակի» կիրառման Միացյալ Նահանգների վերջերս հռչակած նոր դոկտրինան: Այդ բանաձևի օգտին քվեարկեց աշխարհի ավելի քան հարյուր պետություն: Այն համառորեն կոչ է անում չհետաձգել ՍՍՍ—2 պայմանագրի ուժի մեջ մտնելը: Որոշում է կայացված Գլխավոր ասամբլեայի զինաթափման վերաբերյալ 1982 թ. կայանալիք երկրորդ հատուկ նստաշրջանի նախապատրաստական կոմիտեի աշխատանքներն սկսելու մասին:

Չնայած իմպերիալիստական ռեակցիայի համառ դիմադրությանը, լարվածության հետագա թուլացման միտումը պահպանվում է, և Միավորված ազգերի կազմակերպությունը, որի միջազգային հեղինակությունը զգալիորեն աճել է, կոչված է կարևոր դեր խաղալու պատերազմի սպառնալիքը կանխելու, խաղաղությունն ու միջազգային անվտանգությունն ամրապնդելու գործում:

Խաղաղության պահպանման վսեմ նպատակներ հետամտելով, ՍՄԿԿ XXVI համագումարի բարձր ամբիոնից ընկեր Լ. Ի. Բրեժնևը շեշտեց, որ «օգտակար կլիներ հրավիրել Անվտանգության խորհրդի հատուկ նիստ խորհրդի անդամ պետությունների բարձրագույն ղեկավարների մասնակցությամբ, որպեսզի գտնվեն միջազգային իրադրությունը բարելավելու, պատերազմ թույլ չտալու բանալիներ: Նիստին, հավանաբար, ցանկության դեպքում, կկարողանային մասնակցել նաև այլ պետությունների ղեկավարներ»:

Սա մի նոր վկայություն է այն բանի, թե Սովետական Միությունն ինչպիսի հավատարմությամբ է կիրառում լենինյան արտաքին քաղաքականությունը և հետևողականորեն կարևորում Միավորված ազգերի կազմակերպության դերն ու տեղը արդի աշխարհում:

# ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՐԵՆԱՅԻՆ ՊՐՈԲԼԵՄԸ

**Կ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

Պատմական զարգացման արդի փուլում մարդկության առջև ծառացած են մի շարք գլոբալ պրոբլեմներ, որոնք էական ներգործություն ունեն հասարակական կյանքի բոլոր կողմերի, միջազգային հարաբերությունների ողջ համակարգի և համաշխարհային գիտատեխնիկական ու սոցիալական պրոգրեսի վրա:

Արդիականության այդ կարևորագույն պրոբլեմների թվին կարելի է դասել ջերմամիջուկային պատերազմի կանխումը, երկրագնդի աճող բնակչության պահանջմունքների բավարարման համար պարենի, հումքային և էներգետիկ ռեսուրսների ավելացումը, շրջակա միջավայրի պահպանումը, զարգացող երկրների տնտեսական հետամնացության վերացումը, համաշխարհային օվկիանոսի ռեսուրսների պահպանումը, յուրացումը, օգտագործումը և այլն:

Համամարդկային այդ խնդիրների համակարգում իր ուրույն տեղն ունի պարենային պրոբլեմը: Հետպատերազմական վերջին երեսուն տարիների ընթացքում գիտատեխնիկական և սոցիալ-տնտեսական որոշակի առաջընթացի շնորհիվ աշխարհում զգալի տեղաշարժեր են կատարվել գյուղատնտեսական մթերքների արտադրության բնագավառում: 1951—1979 թվականների ընթացքում գյուղատնտեսական մթերքների արտադրության միջին տարեկան ծավալը սոցիալիստական երկրներում ավելացավ 3,3, զարգացած կապիտալիստական երկրներում՝ 2,2, իսկ զարգացող երկրներում՝ 2,9 տոկոսով: Հացահատիկի արտադրությունն աճեց 2,4, շաքարինը՝ 2,6, մսինը՝ 3,1, կաթինը՝ 1,9 անգամ և այլն*:

Չնայած որոշակի առաջընթացին, այժմ համաշխարհային պարենային պրոբլեմը մնում է չլուծված: Բավական է նշել, որ բնակչության մեկ շնչի հաշվով պարենամթերքի արտադրությունը ոչ սոցիալիստական աշխարհում 1950—1977 թթ. ընթացքում ավելացել է 19, այդ թվում՝ զարգացած կապիտալիստական երկրներում՝ 36, իսկ զարգացող երկրներում՝ ընդամենը 2 տոկոսով:

ՄԱԿ-ի պարենային և գյուղատնտեսական կազմակերպության (ՖԱՕ) 20-րդ նստաշրջանի (1979 թ. Հռոմ) տվյալներով աշխարհի սովյալ բնակչության թիվը 1969—71 թթ. 360 մլն մարդուց 1974—76 թթ. հասավ 420, իսկ 1978-ին՝ 600 մլն մարդու: Սպառման միջին օրական 3000—3500 կալորիա նորմայի և զարգացած կապիտալիստական երկրների 3334 կալորիայի փոխարեն համաշխարհային միջին մակարդակը կազմում է 2568, իսկ զարգացող երկրներում՝ 2194 կալորիա:

Սովի օջախներն առավելապես ընդգրկում են Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երկրները, ինչպես նաև զարգացած կապիտալիստական երկրների թերսնվող 60 մլն բնակչությունը: Առանձնապես անբավարար է լիարժեք սննդամթերքներով ապահովվածության մակարդակը: Սպիտակուցների պահանջը բավարարված է 69, այդ թվում՝ կենդանականը՝ 58 տոկոսով: Վիճակն ավելի վատթար է «երրորդ աշխարհի» երկրներում, որտեղ այդ ցուցանիշները համապատասխանաբար կազմում են 54 և 35 տոկոս: Քաղցը և թերսնվածությունը տարեկան 30—40 մլն մարդու մահվան գլխավոր պատճառն են և, ըստ ՄԱԿ-ի փորձագետների գնահատման, եթե շտապ միջոցներ չձեռնարկվեն, ապա այդ թիվը դարի վերջում կտասնապատկվի:

Բնակչության մեկ շնչի հաշվով այժմ սննդամթերքների համաշխարհային սպառումը մեկ տարում կազմում է. հացահատիկինը՝ 130, շաքարինը՝ 24, բանջարեղենինը՝ 66, պտուղներինը և հատապտուղներինը՝ 45, կաթինը՝ 50, մսինը՝ 33 կգ և այլն: Այս ցուցանիշները զգա-

* *Այս և հիշատակված մյուս տվյալները վերցված են* «Мировая экономика и международные отношения» *ամսագրի 1970—1980 թթ. համարներից և հավելվածից*, Развитые капиталистические страны: проблемы сельского хозяйства, М., 1969, Международный сельскохозяйственный журнал СЭВ, 1970—1980 гг. *և այլ աղբյուրներից:*



digitised by A.R.A.R.@

լիորեն պակաս են գիտականորեն հիմնավոր-
ված ֆիզիոլոգիական նորմաներից: Սննդա-
մթերքների արտադրության ռեգիոնալ մեծ
տարբերությունների հետևանքով զարգացող
երկրների շուրջ 2 մլրդ բնակչությունը հինգ
անգամ ավելի քիչ սննդամթերքներ է սպա-
ռում, քան զարգացած կապիտալիստական եր-
կըրների 0,8 մլրդ բնակչությունը, իսկ ընդհա-
նուր առմամբ այդ երկրներում, բնակչության
մեկ շնչի հաշվով, արտադրված գյուղատնտե-
սական մթերքների տարբերությունը հասնում
է 3—4 անգամի:

Պարենային պրոբլեմի գլխավոր հարցը մը-
նում է հացահատիկի և անասնաբուծական մը-
թերքների արտադրությունը: Հացը զարգացող
երկրների բնակչության սննդի կալորիայի 70—
80 և սպիտակուցի 50 տոկոսն է կազմում: Հա-
ցահատիկի համաշխարհային արտադրությունը
1951—55 թվականների 783 մլն տոննայից
այժմ հասել է 1,6—1,7 մլրդ տոննայի, կամ
բնակչության մեկ շնչի հաշվով՝ շուրջ 360 կի-
լոգրամի: Դրա արտադրության անգամ ներ-
կայիս մակարդակը պահպանելու պայմաննե-
րում դարի վերջում հացահատիկի պահանջը
կհասնի շուրջ 2,5 մլրդ տոննայի, իսկ բերքա-
տվության ներկա մակարդակի դեպքում՝ 17 ց:
Հացահատիկի ցանքատարածությունը ներկա-
յիս 0,8 մլրդ հեկտարից պետք է հասնի շուրջ
1,4 մլրդ հեկտարի, այսինքն՝ եղած մշակվող
ամբողջ հողատարածությունը պետք է հատ-
կացվի հացահատիկին, եթե չինտենսիվացվի
դրա արտադրությունը:

Բուենոս-Այրեսի 1978 թ. Անասնաբուծու-
թյան համաշխարհային չորրորդ կոնֆերանսը,
արձանագրելով անասնաբուծական մթերքների
արտադրության խիստ անբավարար մակար-
դակը, նշեց, որ դրանց արտադրությունը, ան-
գամ սպառման արդի մակարդակը պահպանե-
լու դեպքում, պետք է, 1976 թ. համեմատու-
թյամբ, ավելացվի մսինը՝ 63, կաթինը՝ 36,
ձվինը՝ 40 տոկոսով և 1990 թ. հասցվի համա-
պատասխանաբար՝ 197, 587 և 34 մլն տոննայի:

Հայտնի է, որ գյուղատնտեսության համար
պիտանի հողատարածությունները սահմանա-
փակ են: Երկրագնդի բնակչության մեկ շնչի
հաշվով ներկայումս օգտագործվում է մեկ հեկ-
տար հող, որից միայն 0,3 հեկտարը՝ որպես
մշակվող, իսկ 2000 թվականին այն համապա-
տասխանաբար կիջնի 0,6 և 0,2 հեկտարի: Եթե
դրան ավելացնենք նաև այն, որ այժմ զարգա-
ցած կապիտալիստական երկրներում մեկ շնչին
կրկնակի ցանքատարածություն է ընկնում, իսկ
զարգացող երկրներում բնակչության աճը շուրջ
երկու անգամ բարձր է զարգացած երկրներից,
ապա պարզ կդառնա, որ զարգացող երկրնե-
րում պարենային դեֆիցիտը մոտակա հեռա-
նկարում ավելի կսրվի:

Սահմանափակ հողատարածության պայ-
մաններում երկրագնդի բնակչության ամենամ-
յա շուրջ 80 միլիոնով աճը առիթ ծառայեց
բուրժուական տեսաբանների՝ «համաշխարհա-
յին պարենային ճգնաժամը» վարկածի համար:

Իսկապես, երկրագնդի բնակչությունն արա-
գորեն աճում է: Տարբեր հաշվարկների համա-
ձայն, այն արդի 4,4 մլրդ մարդուց 2000-ին
կհասնի 6—7, իսկ 2100—2125 թվականներին՝
12—13 մլրդ մարդու: Ընդ որում, ինչպես
այժմ, այնպես էլ հեռանկարում, առավել բարձր
կլինի զարգացող երկրների բնակչության աճը,
որի հետևանքով ոչ սոցիալիստական երկրնե-
րի ողջ բնակչության մեջ նրանց տեսակարար
կշիռը արդի 72-ից 2125 թ. կհասնի 87 տոկո-
սի:

Վերջին երկու տասնամյակում ստեղծված
պարենային իրավիճակն իր վրա է սևեռել
ՄԱԿ-ի, միջազգային կազմակերպությունների,
քաղաքական գործիչների ու դեմոգրաֆների
ուշադրությունը, ստեղծվել են միջազգային
պարենային պրոբլեմով զբաղվող մի շարք
հանձնախմբեր, այդ պրոբլեմին են նվիրվել
բազմաթիվ մենագրություններ, իսկ իմպերիա-
լիստական տերությունները, «կանխագուշակե-
լով մոտալուտ օրհասը» և համաշխարհային
սովի անկասելիությունը, պարենային մթերք-
ների անտուրը, «պարենային օգնությունը»
դարձրին սառը զենք:

Բավական է հիշել 1968 թ. Միչիգանի հա-
մալսարանում (ԱՄՆ) կայացած գիտաժողովը,
Հռոմի 1974 թ. Համաշխարհային պարենային
կոնֆերանսը, որի առաջարկությամբ ստեղծվեց
ՄԱԿ-ի Պարենային անվտանգության խորհուր-
դը: «Երրորդ աշխարհի» երկրների ագրարա-
յին սեկտորի զարգացմանն օգնելու նպատա-
կով դեռևս 1977 թվականին, 114 երկրների
մասնակցությամբ, ստեղծվել է միջազգային
հատուկ փոնդ (ՖԻԴԱ)՝ մեկ մլրդ դոլար գու-
մարով: Հրավիրվեցին Բուենոս-Այրեսի և Տան-
զանիայի Արուշա քաղաքի 1978 թ., Հռոմի
1979 թ. Համաշխարհային պարենային համա-
ժողովները և այլն:

Սակայն դրանք ավելի շատ զբաղվում են
կոնկրետ իրավիճակի մեկնաբանությամբ, գի-
տական հանձնարարականներ մշակելով և
կանխատեսումներ անելով, քան բուն պրոբլե-
մի լուծմամբ: Այսպես, Արուշայի կոնֆերանսը
սոսկ արձանագրեց Աֆրիկայի և Լատինական
Ամերիկայի պարենային տագնապալի իրավի-
ճակը, Բուենոս-Այրեսի՝ անասնաբուծությանը
նվիրված կոնֆերանսը նշեց անասնաբուծա-
կան մթերքների ավելացման խնդիրներն ու հե-
ռանկարները և այլն:



ՍՄԿԿ XXVI համագումարում արտասանած
իր ճառում այս առիթով Գվինեայի և Կանաչ
հրվանդանի Աֆրիկյան անկախության կուսակ-
ցության Ազգային մշտական խորհրդի անդամ
ընկեր Վ. Ս. Մարին նշեց, որ ներկայացուց-
չական ժողովները քննարկում են գլոբալ պրոբ-
լեմներ, բայց «երրորդ աշխարհի» վիճակը մը-
նում է արտակարգ ծանր: Դա արգելակում է
մեր զարգացումը և երիտասարդ երկրներին
մատնում քաղցի ու ընչազրկության:

Բուրժուական մամուլն իր էջերը լայնորեն
տրամադրում է պարենային պրոբլեմը սենտի-
մենտալ դիրքերից մեկնաբանող սենսացիայի
սիրահարներին, ինչպես և այդ կոնցեպցիան
հատուկ շահադիտական նպատակներով լու-
սաբանող գրչակներին:

Վերջին տարիներին արևմտյան երկրներում
հրատարակված բազմաթիվ աշխատություննե-
րում պարենային պրոբլեմն այնպես է ներկա-
յացվում, որ, իբր, աշխարհը գերբնակեցված է,
ռեզերվներն անբավարար են բնակչությանն
անհրաժեշտ գոյամիջոցներով ապահովելու
համար, և ատիճանաբար դրանք ևս կրճատ-
վում են, ուստի հասարակական ոչ մի ուժ ի
վիճակի չէ փոխելու այդ «օբյեկտիվ» իրողու-
թյունը և պետք է հաշտվել դրա հետ ու հրա-
ժարվել սոցիալ-տնտեսական բարեփոխում-
ների պլաններից: Բուրժուական որոշ տեսա-
բաններ ևս զարգացող երկրների պարենային
ծանր իրավիճակը բացատրում են բնակլիմա-
յական պայմաններով, կենսահոգեբանական,
դեմոգրաֆիական, բայց ոչ երբեք՝ սոցիալ-
տնտեսական գործոններով:

Այսպես, Կոլումբիայի համալսարանի պրո-
ֆեսոր Է. Բենուան իր Աճի և զարգացման
սահմանափակում աշխատության մեջ գրում է,
որ եթե վարկերն ուղղվեն ոչ թե նյութական
արտադրության զարգացմանը, այլ դեմոգրա-
ֆիական աճի դանդաղեցմանը, ապա, բնակ-
չության մեկ շնչի հաշվով, մթերքների ավելաց-
ման համար այդ միջոցների ներդրման արդյու-
նավետությունը հարյուր անգամ ավելի կլինի:

Ամերիկյան այլ տնտեսագետներ հիմնակա-
նը համարում են կառավարման ցածր արդյու-
նավետությունը, որը նրանք տեսնում են այդ
երկրների ժողովուրդների ինքնակառավարման
անընդունակության մեջ: Ոչ անհայտ տնտեսա-
գետ Գ. Մյուրդալը պարենային պրոբլեմը կա-
պում է այդ երկրների ազգաբնակչության ծու-
լության, անկարողության, անընդունակության,
իրենց պայմանների բարելավման համար
ձգտման բացակայության և ազգային արժա-
նապատվությունը նսեմացնող ռասիստական
այլ մեկնաբանությունների հետ:

Սակայն համաշխարհային պարենային ան-
բավարարվածության, սովի ռեգիոնալ օջախ-
ների պատճառներն ամենից առաջ կրում են սո-
ցիալ-տնտեսական բնույթ և ոչ մի ընդհանուր
բան չունեն նեոմալթուսականների մարդա-
տյաց տեսության և գործելակերպի հետ: Ա-
ռաջացած այդ դժվարությունները իմպերիալիս-
տական տերությունների անցյալի գաղութա-
տիրության, նեոգաղութատիրության և արդի
էքսպանսիոնիստական քաղաքականության
ուղղակի հետևանքն են:

Ձեռք բերելով քաղաքական անկախություն,
նախկին գաղութային երկրները չեն հասել
լրիվ տնտեսական անկախության, դեռևս մը-
նում են որպես իմպերիալիզմի «համաշխար-
հային գյուղը», օտարերկրյա կապիտալը այդ
երկրների զգալի մասում տակավին պահպա-
նում է իր դիրքերը:

Երկարատև գաղութատիրությունը թողել է
միայն ծանր ժառանգություն՝ արտադրության
միակուլտուրա, արտադրաուժերի ծայրաս-
տիճան քայքայում, ազգային կադրերի պակաս,
անգրագիտություն, սով և աղքատություն:
Մինչդեռ գաղութարարները դարեր շարունակ
կողոպտել են այդ երկրների հարստություննե-
րը, կասեցրել ազգային ինդուստրիայի զար-
գացումը, շահագործելով էժան աշխատուժը,
չնչին ծախսումներով կորզել մեծ շահույթներ:
Դրան է ծառայել նաև դարեր շարունակ պա-
րենի ու նավթի ոչ համարժեքային փոխանա-
կությունը և այլն:

Գոյություն ունի՞ արդյոք գերբնակեցվածու-
թյուն: Ոչ ոք չի ժխտում հողի տարածական
սահմանափակությունը: Այդ նրա, որպես գյու-
ղատնտեսության գլխավոր արտադրամիջոցի,
կարևոր առանձնահատկությունն է: Այս հան-
գամանքն էլ օգտագործելով, Արևմուտքի նեո-
մալթուսականները շեշտում են համաշխարհա-
յին պարենային աղետի անխուսափելիությունը
և նշում նույնիսկ դրա «ճշգրիտ ժամկետը»՝
2026 թվականը: Այսպիսի «գուշակումներ» ե-
ղել են նաև մեր հարյուրամյակի առանձին ժա-
մանակահատվածների համար, սակայն կյանքը
հերքեց նման սին կռահումները:

Հողի տարածական սահմանափակությունը
դեռևս չի նշանակում, թե արդեն սպառվել են
եղած հողատարածությունները: Աշխարհում
դեռ կան չյուրացված մեծ զանգվածներ: Չէ՞
որ մարդկությունը այժմ մշակում է ցամաքի
սոսկ 10 տոկոսը, անբավարար են օգտագործ-
վում մոտ 3 մլրդ հեկտար արոտավայրեր և
այլն: Սակայն այստեղ գլխավորը հողի բեր-
րիություննն է, դրա մշտական աճի օգտագործ-
ման աստիճանը: ՄԱԿ-ի Համաշխարհային
կոնֆերանսի (Բուխարեստ, 1974 թ.) գնա-
հատմամբ, հողատարածությունների լրիվ և
բարձր արտադրողականությամբ օգտագործ-
ման դեպքում հնարավոր է կերակրել 76 մլրդ





digitised by A.R.A.R.@

21 տոկոսը: Այստեղ մեկ տրակտորին ընկնող տարածությունը 12 անգամ մեծ, իսկ, մեկ հեկտարի հաշվով, պարարտանյութերի օգտագործումը հինգ անգամ պակաս է զարգացած երկրներից:

Գիտատեխնիկական առաջընթացի և ուրբանիզացիայի դանդաղեցումը խաչընդոտում է զարգացող երկրների բանվոր դասակարգի կազմավորմանը: Դա ձեռնտու է միջազգային իմպերիալիզմին՝ այդ երկրները մշտապես իրենց ագրարահումքային կցորդը պահելու համար: Այժմ զարգացած երկրների 10 տոկոսի դիմաց զարգացող երկրներում գյուղական բնակչությունը հասնում է 60 տոկոսի, թեև գյուղատնտեսական արտադրության մեջ զբաղված մեկ աշխատողին զարգացած երկրների համեմատ հինգ անգամ պակաս բնակչություն է ընկնում (4 մարդ), այնուամենայնիվ, անգամ զգալի ներմուծումների պայմաններում, նրանք չեն ապահովում պարենի նվազագույն պահանջները:

Պարենային պրոբլեմի լուծման համար կարևոր նշանակություն ունի զարգացող երկրների ներքին ռեզերվների օգտագործումը: Ամենից առաջ այն պետք է ուղղվի արտադրության կենտրոնացմանն ու կոոպերացմանը, ինտենսիվացմանը, ագրարային բարեփոխումներին, երկրագործության վարման սիստեմի վերակառուցմանը: Երկրագործության վերակառուցումը, գրել է Կ. Մարքսը, պետք է դառնա ապագա հեղաշրջման ալֆան և օմեգան, այլապես ճշմարիտ դուրս կգա հայր Մալթուսը (տե՛ս К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 27, стр. 281):

Զնայած մրցակցության հետևանքով քայքայվում են մանր արտադրողները, համաշխարհային հողատիրությունը մնում է մանրատված, որը զգալիորեն կասեցնում է գիտատեխնիկական առաջընթացը: Զարգացող երկրներում 122 մլն հողատերերից հարյուրն ունեն մինչև հինգ հեկտար, իսկ նրանց կեսից ավելին՝ մեկ հեկտարից էլ պակաս: Այսպիսի արտադրությունը տնտեսապես անարդյունավետ է, այն պահպանվում է մի կերպ, կամ էլ միջազգային որոշ օգնության միջոցով: Ըստ միջազգային վերակառուցման ու զարգացման բանկի տվյալների, 1973—1978 թվականների ընթացքում բանկի վարկերի 70 տոկոսը բաժին է ընկել հենց այդ տնտեսություններին:

Կարևոր միջոց է ցանքատարածությունների կառուցվածքի հետագա բարելավումը: Հավաստի հաշվարկների համաձայն, տեխնիկական կուլտուրաների տարածությունների մոտ 50 տոկոսը 2000 թվականին կտրամադրվի պարենային կուլտուրաներին, որը վերջինիս տարածությունը կընդլայնի 30 տոկոսով: Լրացուցիչ ռեզերվ կլինի զարգացող երկրներում մեքենայացման շնորհիվ կենդանի քաշող ուժի կրճատումը և դրանց կերատարածությունները պարենային կուլտուրաներին հատկացնելը:

Սակայն գլխավոր պրոբլեմը մնում է արտադրության ինտենսիվացումը: Աշխարհում պարարտանյութերի օգտագործումը 1913 թ. 4,6 մլն տոննայից (սննդանյութի վերածած) 1965 թ. հասավ 47, իսկ 1979 թ.՝ 115 մլն տոննայի, կամ մշակվող հողերի մեկ հեկտարի հաշվով շուրջ 76 կիլոգրամի՝ զարգացող երկրների 22 կիլոգրամի փոխարեն: Ըստ ՖԱՕ-ի տվյալների, զարգացող երկրներում այն 1985 թ. պետք է հասցվի 32 մլն տոննայի՝ 1976 թվականի 15 մլն տոննայի փոխարեն: Սակայն դրանք սոսկ ցանկություններ են:

Կարևոր պրոբլեմ է արտադրության տեխնոլոգիայի կատարելագործումը, բարձր մթերատու անասնացեղերի և բարձր բերքատու սորտերի ներդրումը: Մթերատվության բարձրացումը հնարավորություն կընձեռի զարգացող երկրներում նույն կերով եռապատկելու անասնաբուծական մթերքների արտադրությունը: Հացահատիկի բարձր բերքատու սորտերով ցանքի տեսակարար կշիռը զարգացող երկրներում միայն 1985 թվականին կհասնի 30 տոկոսի:

Սննդամթերքների ավելացման հետ մեկտեղ մեծանալու է քաղցրահամ ջրի պահանջը: Հայտնի է, որ այն կազմում է երկրագնդի ջրային ռեսուրսների 2,7 տոկոսը: Սակայն դրանց շուրջ 75 տոկոսը սառույցներն են և միայն 0,3 տոկոսն է գտնվում գետերում և լճերում: Քաղցրահամ ջրերից մարդկությունը ներկայումս օգտագործում է 3300 խորանարդ կիլոմետրը, որի 80 տոկոսը՝ գյուղատնտեսության մեջ: Աշխարհի բնակչության շուրջ մեկ քառորդը, իսկ, ըստ ՄԱԿ-ի ջրային ռեսուրսների գլխավոր քարտուղար Յա. Մագիդի, զարգացող երկրների գյուղական բնակչության երեք քառորդը խմելու ջրով չի ապահովված: Անհա թե ինչու չորադիմացկուն սորտերի, արագաճ կենդանիների ստացումը, ջրօգտագործման տեխնոլոգիայի կատարելագործումն ամբողջ աշխարհում հույժ կարևոր նշանակություն ունեն:

Պարենային պրոբլեմը սերտորեն առնչվում է շրջակա միջավայրի պահպանման և էներգետիկ ռեսուրսների օգտագործման հետ: Ըստ ակադեմիկոս Ն. Վ. Մելնիկովի՝ աշխարհի 12 տրիլիոն տոննա պայմանական վառելիքից ներկայումս կարելի է օգտագործել 3,5—7,7 տրիլիոնը: Սակայն, դրա հետ մեկտեղ, գիտնականները գտնում են, որ չի կարելի անընդհատ ավելացնել էներգետիկ կարողությունները, քանի որ այն կարող է հանգեցնել կենսոլորտի անցանկալի փոփոխությանը: Ըստ Վոլֆսոնի հաշվարկների, վառելիքի բոլոր տեսակների այրման համար երկրագնդի վրա թթվածնի ծախսը 1860 թվականի 1,3 մլրդ տոննայից մեկ դար հետո հասել է 12 մլրդ, 2000-ին կհասնի 57, իսկ 2050-ին՝ 230 մլրդ տոննայի: Ահա թե ինչու նախատեսվում է այն, մեկ մարդու հաշվով, հասցնել ոչ ավելի, քան 20 կվտ-ի, որից, իհարկե, դեռ շատ հեռու է «երրորդ աշխարհը»:

Դրանց հետ միասին կարևոր նշանակություն կստանան արհեստական սննդանյութերի ստացումը, համաշխարհային օվկիանոսի պաշարների օգտագործումը, սննդամթերքների պատրաստման տեխնոլոգիայի կատարելագործումը և այլն: Այժմ արհեստական եղանակով սննդամթերքների արտադրության բնագավառում առկա են որոշակի հաջողություններ: Դա հնարավորություն կընձեռի խնայելու զգալի հողատարածություններ: Բանն այն է, որ բուսական սպիտակուցները, որպես կեր օգտագործելիս, զգալիորեն կորցնում են իրենց որակը: Ըստ գիտական հաշվարկների, կերի համար օգտագործված մեկ տոննա սպիտակուցից կենդանական սպիտակուցների ելը պակասում 5—10 անգամ:

Կարևոր է նաև համաշխարհային օվկիանոսի ռեսուրսների օգտագործումը: Նեկտոնի (ինքնուրույն շարժվող օրգանիզմի) 200 մլն տոննա կարողությունից տարեկան օգտագործվում է 50 մլն տոննան:

Ընդհանրացնելով, կարելի է ասել, որ համաշխարհային պարենային պրոբլեմի լուծման համար չկան անհաղթահարելի դժվարություններ: Համաշխարհային ագրարային գիտության նվաճումները, նոր հողերի յուրացման հնարավորությունները, գյուղատնտեսության վարման ինդուստրիալ մեթոդների ներդրումը, միջազգային գիտատեխնիկական կապերի ընդլայնումը նոր հեռանկարներ են բացում մարդկության առջև: Սակայն դրանց իրականացմանը խանգարում են զարգացող շատ երկրների էկոնոմիկայի ներկա իրավիճակը, էկոնոմիկա, որն այդ երկրներում և նրանց նկատմամբ տարվող քաղաքականության խտացված արտահայտությունն է: Այդ պրոբլեմի լուծման միակ ուղին հասարակական, քաղաքական և սոցիալ-տնտեսական արմատական վերափոխումների իրականացումն է:

Ազատագրված երկրների ճնշող մեծամասնությունն ակտիվորեն պայքարում է այդպիսի վերափոխումների համար: 70-ական թվականների կեսերից նախկին գաղութային երկրները
առաջադրեցին միջազգային նոր տնտեսա-
գի հարցը: Խոսելով այս կարևոր պրոբլեմի
մասին, ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI
համագումարում նշեց, որ դեմոկրատիայի հի-
ման վրա, իրավահավասարության հիմունքնե-
րով միջազգային տնտեսական հարաբերու-
թյունների վերակառուցումը պատմականորեն
օրինաչափ է: Այստեղ շատ բան կարող է ար-
վել և պետք է արվի: Բայց, իհարկե, չի կա-
րելի, ինչպես դա երբեմն անում են, հարցը
հանգեցնել պարզապես «հարուստ հյուսիսի» և
«աղքատ հարավի» միջև եղած տարբերություն-
ներին: Մենք պատրաստ ենք նպաստելու և
գործնականում նպաստում ենք միջազգային
արդարացի տնտեսական հարաբերություննե-
րի հաստատմանը:

ՍՄԿԿ XXVI համագումարը, հավատարիմ մնալով աշխատավորների կենսապայմանների բարելավումը գերագույն նպատակ համարելու իր որդեգրած կուրսին, առաջ քաշեց մեր երկրում նոր պարենային ծրագիր կյանքի կոչելու անհրաժեշտությունը: Այդ ծրագրի իրականացումը, ինչպես նշեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևը, 80-ական թվականների գլխավոր առանձնահատկությունն է լինելու: ՍՍՀՄ-ում և սոցիալիստական մյուս երկրներում պարենային պրոբլեմի լիակատար լուծումը, անկասկած, իր կնիքը կդնի համաշխարհային պարենային իրավիճակի վրա:



digitised by A.R.A.R.@

բարեխիղճ աշխատանքն այդ բնագավառում: Նրա կազմած «Պատվո գրքում» այն սաների լուսանկարներն են, ովքեր ընտրել են սովետական բանակի սպայի դժվարին ու պատվավոր ուղին: Իսկ նրանք շատ են՝ երկրի ավելի քան 53 տարբեր զինվորական ուսումնարանների սաներ: Լրագիրը հետևողական է. երեք ու կես ամիս անց № 98-ում տպագրվում է Երկինքն է կանչում ակնարկը, ուր օդաչու Ալեքսանդր Աբրահամյանը խոստովանում է, որ օդաչուական ուսումնարանի մասին իրեն պատմել է Վասիլի Վորոբյովը, ռազմական գործն ինքը սիրել է նրա շնորհիվ, դպրոցական տարիներից:

Կիրովականի ժողկրթբաժնի զինվորական նախապատրաստության մեթոդիստ Ս. Ռասոլենկոն Իր Ամեն ինչ սկսվում է խաղերից հետաքրքրական հոդվածում (№ 99, 1980 թ.) պատմել է քաղաքի դպրոցներում տարվող ռազմահայրենասիրական աշխատանքների մասին: Հեղինակի նպատակն է ցույց տալ, որ այդ աշխատանքները ո՛չ միայն ապագա ռազմիկներին մարտական և տեխնիկական գիտելիքներ են տալիս, այլև բարձրացնում են նրանց քաղաքական պատրաստականությունը, կազմակերպվածությունը, ամրապնդում կարգապահությունը, համակում հայրենասիրությամբ: Այդ տեսակետից ուշագրավ է նաև պատերազմի վետերան, պաշտոնաթող սպա Արամ Հակոբյանի ...Օրեր հերոսական, օրեր անմոռաց վերնագիրը կրող հոդվածը (№ 52, 1980 թ.): Հեղինակը նկարագրում է իրենց գումարտակի հերոսական մարտերը Ղրիմում, հատկապես Կերչում, պատմում պատերազմի ժամանակ ռազմաճակատի և թիկունքի սերտ համագործակցության մասին:

Հայրենական պատերազմում զոհված կիրովականցի Մկրտիչ Սարգսյանի մասին է Ծաղիկները բուրում են հոդվածը (№ 56, 1981 թ.): Վերջերս հայտնի դարձավ, որ Չերկասի մարզի Կորսուն—Շևչենկոյի նշանավոր ճակատամարտում զոհված այդ զինվորի անունն ամփոփված է եղբայրական գերեզմանում: Հուշարձանին քանդակված անուններից մեկն էլ հայտնի դարձավ:

Հիշարժան են նաև Նա հիշում է... (№ 74), Տասնմեկ գվարդիականներից մեկը (№ 79), Երազները մնում են հեռվում (№ 119), Դարձել են մասունքներ (№ 147) հոդվածներն ու ակնարկները:

Հայրենական մեծ պատերազմում սովետական զինված ուժերի, ամբողջ ժողովրդի տարած հերոսական հաղթանակի տարեդարձի առթիվ «Կայծն» ամեն անգամ բազմաթիվ նյութեր է զետեղում, որոնք պատմում են սովետական բազմազգ ժողովրդի հերոս զավակների հետ մեկտեղ հայ մարտիկների, սպաների ու գեներալների հերոսագործությունների, թիկունքի մարդկանց անձնուրաց աշխատանքի մասին: Առաջնորդող հոդվածներ, ակնարկներ, ինֆորմացիաներ, պատմվածքներ և լրագրային այլ ժանրերով գրված նյութեր ու լուսանկարներ, որոնցով ցույց է տրվում ժողովրդի ու բանակի մեծ միասնությունը, վեհ հայրենասիրությունը, հավատը հաղթանակի նկատմամբ: Ակնհայտ է, որ համարները պատրաստելիս խմբագրությունն ունեցել է որոշակի նպատակ՝ հաղթանակի տոնը կապել արդի խնդիրների հետ: Համարներից մեկում զետեղված է գողտրիկ մի ակնարկ՝ Մայրը վերնագրով, որի հեղինակն է Էմմա Աթյանը: Դա լրագրային փոքրիկ վիպերգ է մոր անսահման սիրո, մեծ սրտի մասին: Նմանօրինակ նյութերը կարող են պատիվ բերել ամեն մի լրագրի: Ակնարկի հերոսը ամուսնուն, որդուն կորցրած բազմաթիվ կանանցից մեկն է, որը, անձնական վիշտը խեղդելով, երկու հերթափոխ աշխատելուց հետո մայրական խնամք է տանում հեռավոր քաղաքից էվակուացված մանկան նկատմամբ: Նա պահել, դաստիարակել է այդ երեխային՝ փոխարինելով պատերազմում զոհված ծնողներին: «Նրանք հերոսներ էին,— գրում է հեղինակը,— որ չէին մտածում փառքի մասին: Նրանք կատարում էին իրենց մարդկային պարտքը, խղճի թելադրանքը»: Խոր հայրենասիրության, մարդկային վեհ հատկանիշների արտահայտություն է այս: Եվ թերթը հետևողականորեն զարգացնում է այդ թեման: Ահա 1980 թ. մայիսի 31-ի համարը. Ոչինչ չի մոռացվել... խորագրի ներքո տպագրվել է Զ. Մոմջյանի Քո որդի՝ Վալենտին... հոդվածը: Լենինգրադյան բլոկադա... Տասնյակ հազարավոր երեխաների կյանքը վտանգի տակ է: Հարկավոր էր փրկել նրանց, փոխադրել թիկունք... Եվ 1942 թվականին միայն Կիրովականը հյուրընկալեց ավելի քան 400 մանուկների: Նրանց մեջ էր նաև յոթնամյա Վալենտին Իվանովը...

Ակնարկը նվիրված է մանկավարժ Անահիտ Ծառուկյանին, որն այսօր էլ փայլուն է կատարում իր գործը: Անցել է 38 տարի, իսկ խնամած երեխաները չեն մոռանում նրան, գրում են, գրում է և լենինգրադցի Վալենտինը, գրում է իր երկրորդ մորը՝ հայ կնոջը, երախտագիտության, որդիական զգացումով:

Թեմատիկայի բազմազանությամբ աչքի է զարնում հատկապես 1981 թ. մայիսի 9-ի համարը. Մարդու ճակատագիրը, Անխորտակ հավատ, Մարտերում կոփված բարեկամություն և այլ հոդվածներ ընթերցողներին ոգեշնչում ու դաստիարակում են սոցիալիստական հայրենիքին անսահմանորեն նվիրվածության ոգով:



Ահա Բուքը ակնարկը, որը տպագրվել է լրագրի 1980 թ. № 63-ում: Հեղինակը՝ նախկին սահմանապահ, պաշտոնաթող սպա Արմենակ Կիրակոսյանը, անդրադառնում է 1942 թվականի հունվարին սովետական արևելյան սահմանների պաշտպանության ծառայության հետաքրքրական դրվագներից մեկին: Մի այլ հոդվածում ցույց է տրվում, որ թեև Կիրովականը սահմանամերձ քաղաք չէ, բայց քաղաքի հասարակայնությունը բարեկամական սերտ կապեր է հաստատել սահմանապահների հետ: Քաղաքի արտադրական ձեռնարկությունների կոլեկտիվները հաճախակի հանդիպումներ են ունենում սովետական բանակի մարտիկների, հատկապես սահմանապահների հետ: Փոխայցելությունների ժամանակ մարտիկները պատմում են իրենց դժվարին ու պատվավոր ծառայությունում ունեցած հաջողությունների, իսկ բանվոր-ծառայողները՝ աշխատանքային բարձր ցուցանիշների մասին: Այդ հանդիպումներում ելույթ են ունենում գեղարվեստական ինքնագործունեության խմբակները: Ժողովրդի ու բանակի անխախտ միասնության արտահայտությունն են և ավանդույթ դարձած այս միջոցառումները:

Լրագրի էջերում, բնականաբար, զետեղվում են արտադրության առաջավորներին, գիտության ու կուլտուրայի գործիչներին, աշխատանքի վետերաններին, քաղաքի անվանի մարդկանց նվիրված բազմաթիվ ակնարկներ: Եվ եթե ակնարկի հերոսը տարեց մարդ է, նկարագրվում է նրա գործունեությունը Հայրենական մեծ պատերազմի տարիներին՝ թե՛ ռազմաճակատում և թե թիկունքում: Իսկ եթե գրվածքը համեմատաբար երիտասարդ մարդու մասին է, ապա ներկայացվում է նրա զերդաստանը, պատերազմում հոր, եղբոր, կամ թիկունքում մոր ու քրոջ կատարած գործերը: Այդ առումով ուշագրավ են «Կայծի» Մեր քաղաքի մարդիկ խորագրի ներքո հրապարակվող հոդվածներն ու ակնարկները. Ինչից է սկսվում հայրենիքը (№ 82, 1980 թ.), Վաստակաշատ մանկավարժի մեծարումը (№ 154), Մարտական պարգևների ասպետը հոդվածաշարը, որը վերցված է ռուս գրող Տիմ Տիմինի Ազատագրված Վիեննայի ասպետը գրքից և վերաբերում է կիրովականցի Հովհաննես Աբովյանին:

Ռազմահայրենասիրական թեմաների լուսաբանումը լրագրի հարազատ գործն է: «Կայծն» այս առումով ունի լավ ավանդույթ և ամեն կերպ ջանում է զարգացնել այն: Հրապարակվող նյութերի միջոցով լրագիրն ընթերցողներին տեղեկացնում է սովետական բանակի, նրա մարտիկների առօրյային, զինվորական և քաղաքական պատրաստականության բարձրացման գործում նրանց հաջողություններին: Նման նյութերը մեծապես նպաստում են սոցիալիստական հայրենասիրության ոգով երիտասարդության դաստիարակությանը:

**Ս. Հ. ՍԱՐԳՍՅԱՆ**
Բանասիրական գիտությունների
թեկնածու

digitised by A.R.A.R.@

# ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ԵՎ ՄԱՐԴՈՒ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԸ

**ՄԱՐԴՈՒ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԻ** վերաբերյալ պրոբլեմը երկու հակադիր՝ կոմունիստական և բուրժուական գաղափարախոսությունների միջև համաշխարհային ասպարեզում ծավալված սկզբունքային պայքարի առաջատար ոլորտներից է:

Ապագայի նկատմամբ հավատի կորուստը ստիպում է կապիտալիզմի տեսաբաններին ու քաղաքագետներին դիմելու սոցիալական դեմագոգիայի՝ գունազարդելու մասնավոր սեփականության հիմքերի վրա խարսխվող հասարակարգը: Հայտնի է, որ ԱՄՆ-ի նախկին վարչակազմը իր արտաքին քաղաքականության գաղափարական պլատֆորմ հռչակեց «մարդու իրավունքների պաշտպանության» մտացածին կանխադրույթը: Սոցիալական պրոգրեսի թշնամիները ոչնչից չխորշելով, ճգնում են սոցիալիստական իրականությունը ներկայացնել ծուռ հայելու մեջ:

Հետևաբար, հույժ անհրաժեշտ են կապիտալիզմի ջատագովների սոցիալ-դասակարգային էության բացահայտումն ու մերկացումը: Այս տեսանկյունից պետք է գնահատել հանրապետության ԳԱ փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտի հրատարակած մենագրությունը* [հեղինակային կոլեկտիվ՝ Ս. Թովմասյան (ղեկավար), Է. Աբգարյան, Ռ. Ավագյան, Ա. Էկմալյան, Մ. Հարությունյան, Բ. Ղարիբջանյան, Ծ. Մարտիրոսյան, Վ. Օսիպով]:

Գիրքը ստեղծվել է փիլիսոփաների և իրավաբանների համատեղ ջանքերով, որ կոնկրետացնում և ավելի առարկայական է դարձնում դրա բովանդակությունը: Այստեղ ցույց են տըրված անհատի ազատությունների և իրավունքների, հասարակության հետ նրա փոխհարաբերությունների, պարտականությունների ամբողջական համակարգեր, որոնց էությունն ու բնույթը վերջին հաշվով պայմանավորված են արտադրաեղանակով: Բուն արտադրաեղանակների օրինաչափ փոփոխության վերլուծությամբ է սկսվում գիրքը, որի ընթացքում համապատասխանաբար փոխվում են մարդու իրավունքների ու պարտականությունների բովանդակությունը, սոցիալական բնույթն ու շրջանակները: Միանգամայն հիմնավոր է այն հարցադրումը, որ հասարակական առաջընթացի կարևոր չափանիշներից է մարդու ազատությունների և իրավունքների ընդլայնումը: Մենագրության առաջին գլուխը նվիրված է այդ օրինաչափության լուսաբանմանը: Այստեղ ճշմարիտ է ասված, որ մասնավոր սեփականատիրական հարաբերությունների պայմաններում, երբ հասարակությունը տրոհված է իրարամերժ շահեր ունեցող դասակարգերի և առկա է մարդու կողմից մարդու շահագործումը, իրավահավասարությունն ու ազատությունը աշխատավոր զանգվածների համար պատրանք են: Լենինի խոսքերով, ազատության և հավասարության լոզունգը արտադրամիջոցների մասնավոր սեփականության պայմաններում բուրժուական հասարակության կեղծիքն ու երեսպաշտությունն է, որը ազատության և հավասարության ձևական ընդունումով քողարկում է բանվորների, բոլոր աշխատավորների, կապիտալի կողմից շահագործվողների փաստական, տնտեսական ազատազրկությունն ու անհավասարությունը:

Հասուն սոցիալիստական հասարակությունը միաժամանակ զարգացած սոցիալիստական դեմոկրատիայի հասարակություն է, ուր երկրի կյանքի կառավարմանը առավել ակտիվ են մասնակցում աշխատավոր զանգվածները: Գիտատեխնիկական առաջընթացը օբյեկտիվորեն խթանում է հասարակական կառավարման գործում աշխատավորների ակտիվ մասնակցությունը, որ հնարավոր է միայն սոցիալիզմի ժամանակ: «Այսպիսով, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելը... հաստատում է պատմական այն օրինաչափությունը, որի համաձայն մարդկային հասարակության զարգացման յուրաքանչյուր աստիճան նախորդից տարբերվում է նաև այն բանով, որ անհատին տալիս է ավելի շատ իրավունքներ և ազատություններ» (էջ 35):

Գրքի հաջորդ բաժիններում կոնկրետ փաստերով ցույց են տրվում զարգացած սոցիալիստական հասարակության քաղաքացու իրավունքներն ու ազատությունները, մասնավորապես շեշտված է աշխատանքի իրավունքի և պարտականության պրոբլեմը:

Հիրավի, աշխատանքի իրավունքը հիմնաքար սոցիալ-տնտեսական սկզբունք է: Սոցիալիստական հեղափոխության հաղթանակով կապիտալիզմին ներհատուկ վարձու աշխատանքը փոխարինվեց ամեն մի շահագործումից ազատ աշխատանքով, որը սոցիալիզմի օրոք հանրային հարստության, ժողովրդի և յուրաքանչյուր քաղաքացու բարեկեցության անհի աղբյուրն է:

Գրքում հիմնավորվում է այն թեզը, որ արտադրաուժերի բարձր զարգացածությունն ինքնին աշխատանքի իրավունքի երաշխիք չէ: Այդ փաստի պերճախոս վկայությունը զարգացած կապիտալիստական երկրներում խրոնիկական գործազրկությունն է, որտեղ վերջին տասնամյակում գործազուրկների բանակը կրկնապատկվեց, 1980 թ. հասնելով 19 միլիոն մարդու: ՍՄԿԿ XXVI համագումարը նշեց, որ կապիտալիզմի պայմաններում արտադրության մեջ գիտատեխնիկական նորագույն հասումների կիրառումն ուղղվում է աշխատավորների դեմ, միլիոնավոր մարդիկ զրկվում են աշխատանքից:

Աշխատանքի իրավունքի երաշխիքը օրինաչափորեն պայմանավորված է սոցիալիզմի բուն էությամբ, արտադրամիջոցների հանրային սեփականությամբ: Հաղթանակած սոցիալիզմի աշխատանքի իրավունքի բաղադրամասերն են՝ երաշխավորված աշխատանքը, ըստ աշխատանքի որակի և քանակի վարձատրվելը, մասնագիտության, զբաղմունքի և աշխատանքի տեսակ ընտրելը: Իրավունքների այս կոմպլեքսը վավերացված է ՍՍՀՄ-ի հիմնական օրենքում և սոցիալիստական հասարակության խոր դեմոկրատիզմի պերճախոս վկայությունն է:

Գրքում պարզաբանվում է աշխատանքի իրավունքի և պարտականության անխզելիության օրինաչափությունը սոցիալիզմի օրոք: Աշխատանքի իրավունքից օգտվելը ենթադրում է հանրօգուտ գործունեության իր ընտրած բնագավառում բարեխիղճ լինելու, աշխատանքային կարգապահությունը պահպանելու բարոյական պարտականությունը:

Գրքում որոշակի տեղ է հատկացված անձի էկոլոգիական իրավունքի լուսաբանմանը: Առաջադրված խնդրի շրջանակներում հարցադրումներն ու մեկնաբանությունները, անշուշտ, տեսական և գործնական նշանակություն ունեն: Այս կապակցությամբ հարցերը քննվում են մարդու կենսագործունեության սոցիալական բնույթից բխող էկոլոգիական պահանջմունքների և իրավունքի հարաբերակցության մեկնակետից:

Թեև էկոլոգիական իրավունքի հասկացության բնորոշումը թերի է, սակայն այն ընդհանուր գծերով վերծանում է դրա իմաստը: Մենագրության մեջ իրավացիորեն շեշտվում է, որ էկոլոգիական իրավունքի էական տարրերից է խաղաղության իրավունքը: Հարցադրման խիստ այժմեականությունն ու հրատապությունը կասկածից վեր է: Հավանաբար կարելի էր ավելի մանրամասնորեն անդրադառնալ այդ պրոբլեմին՝ իմպերիալիզմի մարդատյաց քաղաքականությունը մերկացնելու նպատակով:

Գրքում լուսաբանված է սոցիալիզմի պայմաններում կրթության իրավունքի տեղն ու դերը հասարակության անդամների բազմապիսի իրավունքների սիստեմում: «Այդ իրավունքն առանձնապես կշիռ է ձեռք բերել մեր օրերում, երբ աշխատավոր մարդու համակողմանի, ներդաշնակ զարգացումը՝ իբրև սոցիալիզմի դասակարգային նպատակ, գիտատեխնիկական հեղափոխության ազդեցությամբ վերածվել է հասարակական արտադրության տեխնոլոգիական անհրաժեշտության» (էջ 122):

Կոնկրետ փաստերով ապացուցվում է այն իրողությունը, որ բուրժուական երկրների սահմանադրություններում արձանագրված կրթության հավասար իրավունքների վերաբերյալ կանխադրույթները դեկլարատիվ սխեմաներ են: Գործնական կյանքում առկա են այդ իրավունքների սիստեմատիկ կոպիտ խախտումներ, որոնք վկայում են բուրժուազիայի օրենադրական հավաստումների և ռեալ քայլերի միջև եղած խզումը: Ռասայական խտրականությունը, մայրենի լեզվով դպրոցների բացակայությունը ազգային փոքրամասնությունների, էթնիկական տարբեր խմբերի համար և մի շարք այլ սահմանափակումները հաստատում են բուրժուական կրթական իրավունքի հակադեմոկրատիզմը:

Աշխատավորների անմիջական և ակտիվ մասնակցությունը պետության կառավարմանը, հասարակության գործերին, որ ամփոփված է մարդկանց քաղաքական պահանջմունքների համակցության մեջ, սոցիալիզմի հատկանիշներից է, որ հետազոտված է «Քաղաքական իրավունքներն ու ազատությունները սոցիալիստական հասարկարգում» գլխում: Մենագրությունում իրավացիորեն շեշտվում է, որ ռեալ դեմոկրատական համակարգի ցուցանիշը սոցիալ-տնտեսական ու քաղաքական իրավունքների և ազատությունների հռչակումն ու հուսալի երաշխավորությունն է, դրանց անշեղ կենսագործումը: Միայն քաղաքական իրավունքներից և անձնական ազատություններից օգտվող մարդը կարող է ակտիվորեն մասնակ-

* Սոցիալիզմը և մարդու իրավունքները, Ե., ԳԱ հրատ., 1980 թ.:





digitised by A.R.A.R.@

ցել պետության ու հասարակության գործերին, ներազդել քաղաքականության և մշակվող օրենսդրական ակտերի վրա։ Այս դատողությունների ֆոնի վրա գրքում լայն պլանով բացահայտում է սոցիալիզմին ներհատուկ քաղաքական իրավունքների ու ազատությունների մեխանիզմի ժողովրդական բնույթը։

Այստեղ արծարծված է նաև իրավունքների և ազատությունների այնպիսի խումբ, ինչպես անձի, բնակարանի անձեռնմխելիությունը, նամակագրության գաղտնիությունը, խղճի ազատությունը, որոնք սոցիալիստական իրավական ստատուսի տարրերն են։

Մեթոդաբանական առումով թերևս ճիշտ են վարվում մենագրության հեղինակները, որ մարդու իրավունքների ու ազատությունների հետ առնչվող հարցերի մեծածավալ սպեկտրի վերլուծությունը եզրափակում են իրավունքների ու պարտականությունների միասնության պրոբլեմի մեկնաբանմամբ։ Ըստ էության, այդ գործոնների միասնությունը սոցիալիստական համակեցության առանցքային սկզբունքներից է։

Անտարակույս, սոցիալիզմին բնորոշ մարդու իրավունքների և պարտականությունների միասնության հիմքում ընկած են սոցիալ-տնտեսական և քաղաքական շահերի ընդհանրությունը, սոցիալիստական հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքով կանխորոշվող շարժառիթները։ Հեղինակներն անհատի իրավունքների և պարտականությունների միասնությունը իրավացիորեն գնահատում են որպես սոցիալիզմի գաղափարաբարոյական բարձրագույն արժույթներից մեկը։ Այս դրույթի վրա հենվելով՝ նրանք անդրադառնում են սոցիալական պատասխանատվության երևույթին, որի ձևավորումը շաղկապվում է անհատի կողմից հասարակական արժույթների յուրացման հետ։

Այս կոնտեքստում վերլուծվում է սոցիալիստական մրցության հասարակական կարևորությունը իրավունքների և պարտականությունների միասնության դրսևորման ու ամրապնդման տեսանկյունից։ Ի դեպ, այս հարցին վերստին անդրադարձավ կուսակցության XXVI համագումարը։

Հեղինակները փորձում են վեր հանել դեռևս մեր շրջապատում տեղ գտած հակահասարակական երևույթների շարժառիթները։ Ուշագրավ է այն միտքը, որ քաղքենիական-սպառողական հոգեբանությունը, իրապաշտությունը անհատի իրավունքների և պարտականությունների միջև խզման արտահայտություն են, որը թելադրում է պրոֆիլակտիկ դաստիարակչական միջոցառումների ուժեղացման անհրաժեշտությունը։ Ընդգծվում է այդ գործում աշխատանքային կոլեկտիվների դերը։

Մենագրությունն ավարտվում է «Բուրժուական դեմոկրատիան և մարդու իրավունքները» գլխով։ Այստեղ ցույց է տրվում սոցիալիստական և բուրժուական դեմոկրատիայի արմատական տարբերությունը, մերկացվում են սոցիալիստական երկրներում մարդու իրավունքների առնչությամբ բուրժուական գաղափարախոսների զրպարտչական բարբաջանքները։ Ռեալ դեմոկրատիզմն այն հասարակարգի առանցքային սկզբունքն է, ներտնտեսական ու ներքաղաքական կյանքի էական բաղադրամասերից մեկը, որի հիմքում ընկած են ազատ աշխատանքն ու ստեղծագործությունը։ Այդ հասարակարգն ազատ է սոցիալական կոնֆլիկտների հարուցիչներից, օգնում և համակողմանիորեն աջակցում է իրենց ազատության և անկախության համար մարտնչող ժողովուրդներին և անխոնջ պայքար է մղում հանուն կայուն խաղաղության։ Սոցիալիզմը և հումանիզմը անբաժանելի են։

Մենագրությունը զերծ չէ նաև որոշ թերություններից։ Կառուցվածքային առումով նպատակահարմար էր հարցերի շարադրանքն սկսել մարդու իրավունքների բուրժուական ըմբռնման և մեկնաբանությունների ծավալուն քննադատությամբ, ապա անցնել գիտամատերիալիստական կոնցեպցիայի դիրքերից «սոցիալիզմը և մարդու իրավունքները» պրոբլեմի լուսաբանմանը։ Գուցե և՛ մեթոդապես, և՛ նպատակաուղղվածության առումով արժեր աշխատանքը նախաբանել հարցի պատմության, խիստ այժմեականության և հրատապության շարադրանքով ու հիմնավորումով։

Երկրորդ գլխում պարզաբանվում է աշխատանքի իրավունքի և պարտականության հարաբերակցությունը սոցիալիստական հասարակությունում, իսկ իրավունքների և պարտականությունների միասնության էությունն ու առանձնահատկությունները քննարկվում են յոթերորդ գլխում։

Ժողովածուում հաճախ են հանդիպում կրկնողություններ, պարզապես միևնույն մտքերը հոլովվում են տարբեր շարահյուսությամբ։ Գրքում տեղ են գտել որոշ անհաջող և ոչ հստակ ձևակերպումներ, խմբագրական բնույթի անճշտություններ։

Նշված թերությունները չեն նվազեցնում մենագրության տեսական և գործնական արժեքը. այն կարող է ծառայել որպես ձեռնարկ հասարակագետների, պրոպագանդիստների և առհասարակ ընթերցողների լայն շրջանի համար։

**Ս. Ա. ՔՈՉԱՐՅԱՆ**

Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ՀԱՋՈՂՎԱԾ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ

**ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ** սիստեմի ձևավորման և զարգացման հարցերը գիտական կոմունիզմի տեսության կարևոր բաղկացուցիչ մասն են։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը գոյություն ունի շուրջ երեք տասնամյակ, սակայն այն ձեռք է բերել նշանակալի հաղթանակներ, դարձել արդիականության զարգացման վճռական գործոնը։ Ընդլայնվում ու ամրապնդվում են սոցիալիզմի դիրքերն ամբողջ աշխարհում։ Այստեղից էլ այն մեծ հետաքրքրությունը, որ կա սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորման և զարգացման պրոբլեմների նկատմամբ։ Հրապարակի վրա են այդ հարցերին նվիրված բազմաթիվ աշխատություններ։

Վերջերս Երևանի պետական համալսարանի հրատարակությամբ լույս տեսավ փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր **Մ. Ա. Առուստամյանի** Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման օրինաչափությունները մենագրությունը*։ Աշխատության առաջին գլխում լուսաբանվում են սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորման և զարգացման փուլերի հետ կապված տեսական մի քանի հարցեր։ Նախ դրվում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի տեսության ամենից ավելի գործածական հասկացությունների («սոցիալիստական լագեր», «սոցիալիզմի համաշխարհային սիստեմ», «սոցիալիստական համագործակցության երկրներ», «ռեալ սոցիալիզմ», «համաշխարհային սոցիալիզմ») վերլուծությունը, նրանց հարաբերակցության պարզաբանումը։

Գրքում այնուհետև ցույց են տրված սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորման նախադրյալները, պայմանները, հետևանքները և պատմական նշանակությունը։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը ձևավորվեց 40-ական թվականների վերջին՝ որպես համաշխարհային հեղափոխական պրոցեսի օրինաչափ արգասիքը, եղավ մեր դարաշրջանի դեմքը բնորոշող Մեծ հոկտեմբերի միջազգային հետևանքներից ամենագլխավորը։ Հեղինակը միաժամանակ նշել է ՍՍՀՄ-ի կարևոր դերը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ձևավորման գործում։

Այստեղ բնութագրված են սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ձևավորման և զարգացման փուլերը։ Առաջին փուլն ընդգրկում է 40-ական թվականների երկրորդ կեսից (1944—1949 թթ.) մինչև 60-ական թվականների սկիզբը։ Դա ՍՍՀՄ-ի համար զարգացած սոցիալիստական հասարակության կառուցման, իսկ սոցիալիստական մյուս երկրների համար՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցման, սոցիալիզմի հիմքերի կառուցման ժամանակաշրջանն է։

Երկրորդը՝ արդի փուլն է, որը ներառնում է 60-ական թվականների սկզբից մինչև մեր օրերն ընկած ժամանակաշրջանը։ Դա ՍՍՀՄ-ի համար հասուն սոցիալիզմի հաղթանակի և հետագա զարգացման, կատարելագործման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ժամանակաշրջանն է, երբ սոցիալիստական երկրների մեծ մասը կառուցում է զարգացած սոցիալիստական հասարակություն, իսկ նրանցից մի քանիսը (Ասիայի երկրները և Կուբան) շարունակում են սոցիալիզմի հիմքերի կառուցումը, չեն ավարտել անցման շրջանը։

**Մ. Ա. Առուստամյանը** կարևոր մեթոդական ճշգրտում է կատարում սոցիալիզմի համաշխարհային սիստեմի պարբերացման հարցում, քննադատում է առանձին հեղինակների, որոնք այդ սիստեմի զարգացման մեջ տեսնում են երկուսից ավելի փուլեր։

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակի և անցման շրջանում կատարված արմատական վերափոխումների շնորհիվ հաստատված սոցիալիզմն իր զարգացման ընթացքում անցնում է երկու փուլ. ա) հիմնականում հաղթանակած սոցիալիզմի հետագա վերելքի և զարգացած սոցիալիզմի կառուցման, բ) հասուն սոցիալիզմի հետագա կատարելագործման և այն աստիճանաբար կոմունիզմի վերաճման։

Աշխատության երկրորդ և երրորդ գլուխները նվիրված են սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման օրինաչափությունների հետազոտությանը։

---

* **М. А. Арустамян,** Закономерности развития мировой системы социализма. Изд. ЕГУ, 1980 г.



digitised by A.R.A.R.@

*տուՁյունների հարաբերությունների բարելավ-ման գործում։*

Լ. ԳԵՎՈՐԳՅԱՆ— Կոմունիստական գաղափարական համոզվածության դաստիարակումը: *«Հայաստան» հրատ., 1981։*

*Գրքույկը բաղկացած է երեք գլուխներից՝* Կոմունիստական դաստիարակության հրատապությունը զարգացած սոցիալիզմի պայմաններում, Գաղափարական աշխատանքի գլխավոր խնդիրը, Գաղափարական համոզմունքի ձևավորման օբյեկտիվ և սուբյեկտիվ նախադրյալները:

*Գրքույկում փորձ է արվում պարզաբանել, թե կոմունիստական գաղափարական համոզվածությունն ինչպես է դրսևորվում և արմատավորվում կյանքում։*

Պ. ՍԱՖՅԱՆ— Նոր մարդ, նոր ապրելակերպ: *«Հայաստան» հրատ., 1981։*

*Գրքույկում վերլուծված են սոցիալիստական ապրելակերպի զարգացման սկզբունքները և ձևավորման նախապայմանները, բացահայտված է արտադրաեղանակի և մարդու գործունեության բնույթի միջև եղած կապը։ Քննարկված են սոցիալիստական ապրելակերպի հաստատման, նոր մարդու ձևավորման և նրա հոգևոր կատարելագործման պրոցեսները։*

Վ. ՄԽԻԹԱՐՅԱՆ— Սոցիալական ճանաչողություն և պլանավորում: *«Հայաստան» հրատ., 1981։*

*Աշխատության մեջ վերլուծվում են սոցիալական ճանաչողության և պլանավորման հարաբերակցության մի քանի հարցեր։ Փորձ է արվում բացահայտելու սոցիալական պլանավորման մի շարք ելակետային կատեգորիաների սոցիալ-փիլիսոփայական բովանդակությունը։*

*Աշխատությունը նախատեսված է պլանավորման տեսության մասնագետների, փիլիսոփայական և տնտեսագիտական ֆակուլտետների ուսանողության համար։*

Գ. ՄԿՐՏՉՅԱՆ— Նպատակ և կանխատեսում: *«Հայաստան» հրատ., 1981։*

*Գրքույկում հեղինակը տալիս է նպատակի և կանխատեսման բազմակողմանի վերլուծությունը, կապելով դրանք ՍՄԿԿ տեսական ու պրակտիկ գործունեության, կոմունիստական շինարարության հետ։*

*Քննարկված են նպատակի ու կանխատեսման բնույթի և տեսակների, հասարակական կյանքում դրանց խաղացած դերի վերաբերյալ հարցերը։*

*Քննադատված են նաև նպատակի ու կանխատեսման մասին եղած հակագիտական տեսությունները։*

---

**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

**ԱԴՈՅԱՆ Ա. Գ.** (գլխավոր խմբագիր), **ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Մ. Բ., ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ.** (պատասխանատու քարտուղար), **ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ս. Գ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Մ. Դ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս.** (գլխավոր խմբագրի տեղակալ), **ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս. Հ.**

Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՑԱՅԼՈՅԱՆ
Թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375033, Ереван-33, ул. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ **375033, Երևան—33, Բարեկամության 59 գ։** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*Հանձնված է շարվածքի՝ 25.6.81—2.7.81։ Ստորագրված է տպագրության՝ 3.7.81։ ՎՖ 10276։ Ֆորմատ՝ 70×108 1/16։ Տպագրությունը՝ բարձր։ 8,4 պայմանական տպ. մամ.։ 9,4 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 15.832։ Պատվեր 1564։*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2։*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.

digitised by A.R.A.R.@

Գինը՝ 20 կ.
Индекс 77783

ISSN 0130—8114

# Գիտության և տեխնիկայի նորություններ

## ԴԱԺԱՆ ՀԻՎԱՆԴՈՒԹՅԱՆ ԴԵՄ

Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտի գիտնականները ստեղծել են պուֆեմիդ կոչվող նոր պատրաստուկը, որը էպիլեպսիայի տարատեսակների բուժման արդյունավետ միջոց է։ Սովորաբար հակաէպիլեպտիկ դեղամիջոցները հիվանդներին նշանակվում են և նոպայից հետո, քանի դեռ էնցեֆալոգրաֆիան ցույց չի տվել հիվանդի վիճակի բարելավում։ Սակայն նույնիսկ անվնաս համարվող պատրաստուկների երկարատև օգտագործումը կարող է անցանկալի ազդեցություն ունենալ։ Պուֆեմիդն այդ առումով բացարձակապես անվնաս է։ Բացի այդ, այն չի առաջացնում թուլություն ու քնկոտություն, որից դժգոհում են համանման դեղամիջոցներ ընդունող հիվանդները։

Նոր պատրաստուկը պատենտավորված է ԱՄՆ-ում, Մեծ Բրիտանիայում և այլ երկրներում։

## ԱՐԺԵՔԱՎՈՐ ՀԱՎԵԼՈՒՄ

Ինչպես հայտնի է, ալյումինն ստանում են բոքսիտներից, ավելի ճիշտ՝ դրանց մեջ պարունակվող կավահողից. այդ այն դեպքում, երբ բոքսիտի մեջ դրա պարունակությունը բավական մեծ է, իսկ երբ քիչ է, բոքսիտը համարվում է ոչ պիտանի։

Ղազախական ՍՍՀ ԳԱ մետալուրգիայի և հարստացման ինստիտուտի գիտնականները վերջերս գտել են ցածրորակ բոքսիտի մշակման նոր եղանակ, որի շնորհիվ ստացվում է բարձրորակ կավահող, ինչպես նաև հազվագյուտ մետաղներ և նատրիումի սուլֆիդ։

Պավլոդարի՝ ՍՍՀՄ-ի 50-ամյակի անվան ալյումինի գործարանի ինժեներների ու բանվորների հետ գիտնականներն ստեղծել և ներդրել են ալյումինի ստացման նոր եղանակ։ Աշխարհում առաջին անգամ իրականացվող այդ արտադրության համար նախագծվել է ինքնատիպ սարքավորում։

## ԱՊԱԿՅԱ ՀԱՂՈՐԴԱԼԱՐԵՐ

ՍՍՀՄ ԳԱ ֆիզիկայի, ռադիոտեխնիկայի ու էլեկտրոնիկայի և քիմիայի ինստիտուտների մասնագետները միացյալ ուժերով ստեղծել են ապակեթել լուսատարներ՝ օպտիկական նվազագույն կորուստներով։

Ապակյա հաղորդալարերը լայնորեն կիրառվում են կապի գծերում։ Էլեկտրահոսանքի փոխարեն դրանց միջով «հոսում են» գունային իմպուլսներ։ Այդ շատ շահավետ է, որովհետև տնտեսվում է մեծ քանակությամբ դեֆիցիտային պղինձ, մեծանում է կապի գծերի թողունակությունը և ինֆորմացիայի հաղորդման արագությունը։ 100 միկրոն հաստության մեկ նրբաթելով կարելի է միաժամանակ հաղորդել հեռախոսային մի քանի հազար խոսակցություն։ Վերջին տարիներս մեր երկրում արդեն ստեղծվել են կապի մի շարք փորձնական գծեր, որտեղ օգտագործվում են լուսատարները։ Դրանցից մեկը հաջողությամբ գործարկվում է Գորկի քաղաքում։

## ՊԱՀՊԱՆԵԼՈՎ ԲԵՐՔԸ

Ինչպե՞ս անկորուստ պաշտպանել գյուղատնտեսական մթերքները տարվա տարբեր եղանակներին։ Վերջին տարիներս այդ պրոբլեմով զբաղվել է Վլադիմիրի սինթետիկ խեժի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտը։ Ինստիտուտի գիտնականները Տիմիրյազևի անվան գյուղատնտեսական ակադեմիայի մասնագետների հետ ստեղծել են սարքավորում ճակնդեղի, կարտոֆիլի և այլ արմատապտուղների լայնակույտերը պենոպլաստե հատուկ պաշտպանական շերտով ծածկելու համար։

Բեռնատար ավտոմեքենաների վրա մոնտաժված նման սարքավորումը անհրաժեշտության դեպքում կարող է շրջել կոլտնտեսություններում և սովխոզներում, ընդունման կետերում, շաքարի գործարաններում և արագորեն ծածկել տարբեր արմատապտուղները սինթետիկ «հագուստով»։ Խառնուրդը բոլորովին վտանգավոր չէ, չի ազդում մթերքների որակի վրա։ Բերքը ուղղակի դաշտում հուսալիորեն պաշտպանվում է ցրտից ու խոնավությունից, չի փչանում և պահպանվում է երկար ժամանակ։

digitised by